




Լրանում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության փառապանծ հաղթանակի 60 տարին: Հետադարձ հայացք նետենք, մտովի վերադառնանք հեղափոխական Պետրոգրադ, շրջենք աշնանային քաղաքի խոնավ ու ցուրտ փողոցներում, կարմիրգվարդիականների, զինվորների և նավաստիների հետ տաքանանք խարույկների շուրջը, մտնենք Սմոլնի, Պետրոպավլովյան ամրոց, միանանք Ձմեռային պալատը գրոհողներին:

1917 թ. Փետրվարյան հեղափոխությունից հետո կազմված բուրժուական Ժամանակավոր կառավարության հակաժողովրդական բնույթը շատ շուտ երևան եկավ: Ռուսաստանի աշխատավորները, որ տապալել էին ցարիզմը, կառավարությունից չստացան այն, ինչ սպասում էին՝ ո՛չ հաց, ո՛չ հող, ո՛չ խաղաղություն: Շարունակվող իմպերիալիստական պատերազմը նոր միջոցներ և մարդկային կյանքեր էր լափում: Ելնելով ստեղծված իրավիճակից, բոլշևիկյան կուսակցությունը Վ. Ի. Լենինի գլխավորությամբ զինված ապստամբության կոչ արեց: Ընդհատակում գործող Վ. Ի. Լենինը Հելսինգֆորսից (Ֆինլանդիա) վերադարձավ Ռուսաստան և հոկտեմբերի 7-ին արդեն Պետրոգրադում էր: Տեղավորվելով հեղափոխական Մ. Վ. Ֆոֆանովայի կոնսպիրատիվ բնակարանում, Վ. Ի. Լենինը հոկտեմբերի 8-ին գրեց «Կողմնակի անձի խորհուրդները» նշանավոր նամակը, որով բոլշևիկյան կուսակցությանը հիշեցնում էր Կ. Մարքսի մշակած զինված ապստամբության գլխավոր կանոնները. «Գործել ամենամեծ վճռականությամբ և անպատճառ, անպայման անցնել հարձակման: Պաշտպանվելը զինված ապստամբության մահն է», «Թշնամուն հանկարծակիի բերել», ինչպես նաև Ֆրանսիական մեծ հեղափոխության գործիչ Դանտոնի խոսքերը. «Համարձակությո՜ւն, համարձակությո՜ւն և դարձյալ համարձակությո՜ւն»:

Հեղափոխական Պետրոգրադը պատրաստվում էր հարձակման: Հոկտեմբերի 12-ին կազմված Ռազմահեղափոխական կոմիտեն գործի էր անցել: Այդ դեպքերի ականատես ամերիկացի գրող և թղթակից Ջոն Ռիդը գրում է. «Գործարաններում կոմիտեների սրահները ողողված էին հրացաններով: Գալիս և գնում էին կապավորներ, զինավարժվում էր Կարմիր գվարդիան... Բոլոր զորանոցներում օր ու գիշեր տեղի էին ունենում միտինգներ, անվերջանալի և թեժ վեճեր: Երեկոները փողոցների թանձրացող խավարում շարժվում էր ամբոխը: Ասես մակընթացության ալիքներ լինեին, որ վեր ու վար էին հոսում Նևսկի պողոտայով: Նրանք կուտակվում էին Սմոլնիում՝ հեղափոխության շտաբում»:

Նախապատրաստական միջոցներ էր ձեռնարկում նաև Ժամանակավոր կառավարությունը: Ձմեռային պալատի պաշտպանությունը ուժեղացվեց յունկերների նոր ջոկատներով և «մահվան գումարտակ» հորջորջված կանանց զորամիավորումով: Ռազմաճակատից պահանջվեց կառավարությանը հավատարիմ զորախմբեր, որոնց օգնությամբ Ժամանակավոր կառավարությունը մտադիր էր գրոհել հեղափոխական Սմոլնու վրա:

Զինված ընդհարումները սկսվեցին հոկտեմբերի 24-ին (նոյեմբերի 6-ին): Առավոտյան յունկերների ջոկատը հարձակում գործեց բոլշևիկյան «Պրավդա» և «Զինվոր» լրագրերի հրատարակչության վրա: Կարմիրգվարդիականները հակահարված տվին յունկերներին: Շուտով ամբողջ քաղաքը ողողվեց հեղափոխական զինվորներով, որոնց թիվը հասնում էր մոտ 200 հազարի: Ռազմահեղափոխական կոմիտեն գործում էր անասելի վճռականությամբ: Բանվորագյուղացիական զանգվածները գիտակցում էին, որ դա վերջին մարտն է շահագործողների դարավոր լծից ազատվելու իրենց երկարատև պայքարում: Նրանք ընկճեցին Ձմեռային պալատը տանող Նևայի կամուրջների վրա դիրքեր գրաված յունկերների դիմադրությունը, գրավեցին հեռագրատունը, երկաթուղային կայարանները, էլեկտրակայանը, պետբանկը և մյուս կարևոր կետերը: Գիշերը հեղափոխության զինված ուժերը օղակեցին հակահեղափոխու-

# ՐՈՀՈՒՄԸ



Վ. Ցիպլակով — Վ. Ի. ԼԵՆԻՆ

թյան վերջին ապաստարանը՝ Ձմեռային պալատը:

Եվ ահա բացվեց հոկտեմբերի 25-ի (նոյեմբերի 7-ի) առավոտը: Հաջորդ օրվա բուռն իրադարձություններից հետո քաղաքը խաղաղ և հանգիստ էր թըվում: Ոչ մի կրակոց չէր լսվում: Ազդագրերը սովորականի պես հաղորդում էին, որ երեկոյան ելույթ է ունենալու մեծ Շալյապինը, Մարինյան թատրոնում հանդես է գալու հռչակավոր պարուհի Կարսավինան, թատերասերները կարող են դիտել Ա. Տոլստոյի «Իվան Գրոզնու մահը» պիեսի մեյերխոլդյան բեմադրությունը: Նևսկի պողոտան երբեք այդքան մարդաշատ չէր եղել, բայց հազիվ թե գտնվեր գեթ մեկը, որն այդ օրը մտածեր համերգի, բալետի կամ թատրոնի մասին: Նրանք այդ օրը ականատես էին լինելու պատմության մի խոշորագույն իրադարձության:

Պետրոգրադում դեռևս հայտնի չէր, որ այդ օրը, առավոտյան ժամը 7-ին, ամերիկյան դեսպանատան ավտոմեքենայով քաղաքից ծպտված փախել է Կերենսկին: Նա առաջինն էր հասկացել, որ Ձմեռային պալատի պաշտպանությունն անհույս է, բայց մոռացել էր, որ նման դեպքում կապիտանը վերջինն է լքում խորտակվող նավը: Նախագահ-մինիստրը «երկրի բախտը» թողած պատանի յունկերների և կանանց գումարտակի հույսին, ազատում էր գլուխը, որ հետո, վտարանդիության մեջ գրելիք հուշերում իր գործունեությունն ու փախուստը արդարացնի:

Ռազմական գործողությունները անձամբ գլխավորելու համար, նախորդ գիշեր ընդհատակյա բնակարանից Սմոլնի էր եկել Վ. Ի. Լենինը: Գրոհի անմիջական ղեկավարումը վստահվեց Ն. Ի. Պոդվոյսկուն, Վ. Ա. Անտոնով-Օվսեենկոյին և Գ. Ի. Չուդնովսկուն: Դվարցովյան հրապարակի կողմում ամրացան կարմիրգվարդիականների, զինվորների և նավաստիների ջոկատները, գետի կողմից սպառնում էին «Ավրորայի» և Պետրոպավլովյան ամրոցի հրանոթները: Օղակը փակում էին Կրոնըշտադտից ժամանած նավերը և ծովային հետևակը: Խոշոր ուժեր էին կենտրոնացված թևերում՝ Ժամանակավոր կառավարությանը ռազմաճակատից սպասվող օգնական զորամասերին դիմագրավելու համար:

# ՄԵԶ Է ԺՊՏՈՒՄ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ

*ԱՆԱՀԻՏ ԹԱՐՅԱՆ*

Արեգակից այս կենսակաթ,
Այս երկնքից՝ ջինջ, կապուտակ,
Սաղարթախիտ այս ծեր կաղնուց,
Ձյունափետուր այս աղավնուց,
Որ մաքրում է սև ամպերը,
Մեզ է ժպտում Հոկտեմբերը:

Բյուր շենքերից այս երկնահաս,
Գործարանից, կռունկից այս,
Շատրվանող այս լույսերից,
Անգամ սարի կոր ուսերից,
Ուր ծփում են ծով արտերը,
Մեզ է ժպտում Հոկտեմբերը:

Ծովն այս ճեղքող նավ-կոմբայնից,
Մրգահասի քաղցրիկ ձայնից,
Նոր հողերից, ԲԱՄ-ից հզոր,
Ուր հորդում են գիշեր ու զոր
Աշխատանքի մեր երգերը,
Մեզ է ժպտում Հոկտեմբերը:

Մանկան շուրթից՝ այս թոթովող,
Թաթիկներից՝ թմբլիկ, թովող,
Աչիկներից նրա պայծառ,
Թշիկներից նրա վառ-վառ,
Շրթունքներից հանգ վարդերը,
Մեզ է ժպտում Հոկտեմբերը:

Դրոշներից այս փողփողուն,
Կրեմլի աստղից այս շողշողուն,
Մեծ Լենինի տաք հայացքից,
Արեգակից, տիեզերքից,
Ուր թռչում էին մեր նավերը,
Մեզ է ժպտում Հոկտեմբերը:



Երեկոյան ժամը 9 անց 40 րոպե, Պետրոպավլովյան ամրոցի ամենաբարձր աշտարակում կարմիր լույս առկայծեց: Դա նշանակում էր, որ լրացել էր հանձնվելու համար Ժամանակավոր կառավարությանը ներկայացված վերջնագրի ժամկետը: Ստանալով ազդանշանը՝ «Ավրորա» հածանավի հրանոթները որոտացին: Հեղափոխության զինված ուժերը նետվեցին գրոհի:

Նախ անձնատուր եղավ կանանց գումարտակը, նրան հետևեցին յունկերների ջոկատները: Գիշերվա ժամը 2-ն անց 10 րոպեին լռեցին վերջին կրակոցները: Ժամանակավոր կառավարությունը տապալված էր: Հոգնած, բայց երջանիկ կարմիրգվարդիականները, զինվորները, նավաստիները շրջում էին Ձմեռային պալատի անվերջանալի սրահներում և նախասրահներում: Ահա հռչակավոր Մալախիտե դահլիճը. այստեղ էին իրենց նիստերը գումարում Ժամանակավոր կառավարության մինիստրները: Այժմ այն դատարկ էր: Մինիստրները ձերբակալվել էին և ուղարկվել Պետրոպավլովյան ամրոց: Դահլիճի պատուհաններից երևում էր քաղաքի համայնապատկերը: Մալախիտե դահլիճից միջանցքը տանում էր մի հարմարավետ ու ոչ ընդարձակ սենյակ, որը ժամանակին եղել էր Նիկոլայ II ցարի առանձնասենյակը, այստեղ էին ձերբակալումից առաջ վերջին ժամերը անցկացրել Ժամանակավոր կառավարության մինիստրները: Շրջող զինվորներին մոտեցավ մի երիտասարդ բոլշևիկ-հրամանատար և ասաց. «Ընկերնե՛ր, խնդրում եմ ոչնչի ձեռք չտալ, չվնասել: Այս պալատն այսուհետև պատկանում է ժողովրդին: Սա այժմ ձեր պալատն է»:

Նույն գիշեր Սմոլնիում իր աշխատանքները սկսեց Սովետների Համառուսաստանյան II համագումարը, որը Ռուսաստանը հայտարարեց Սովետական Հանրապետություն:

# ԼԵԳԵՆԴ ՊԱՏԱՆԻ ԿԱՊԱՎՈՐԻ ՄԱՍԻՆ

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նվիրում եմ Հոկտեմբերյան մեծ հեղափոխության 60-ամյակին:*

1.

Որպես ահեղ այն մարտերի
Խռուսն վկան,
Մինչև այսօր
Թանգարանում դրված է դեռ
Աստղաճակատ կոմունարկան:
Կանգնի՛ր այստեղ,
Լսի՛ր ու տես,
Ինչ է պատմում լեգենդը քեզ:

2.

Փոքրիկ գյուղում մարդիկ բարի
Ինչ դեղ ու ճար արին-չարին,
Մայրը չապրեց, մայրը մարեց՝
Աչքը հառած միսնուճարին:
Որդին լացեց,
Դեռ արցունքը չչորացած,
Լուրը եկավ՝
Հենց գյուղի մոտ, կռիվներում,
Հայրը ընկավ,
Եվ որպես հուշ
Տուն բերին հոր կոմունարկան:
Մի՞թե խրճիթն այսպես հանգավ.
Ո՛չ, զինվորի որդին, սակայն,
Որբ չմնաց,
Պատանին հոր գլխարկն հագավ,
Ջոկատ գնաց:

3.

Հոր գլխարկը մեծ էր այնքան,
Որ երբ հագավ,
Ասես մտավ
Վրանի տակ:
Բայց թե այդպես հո չի՞ մնա,
Կմեծանա...
Պիտի ապրել, պիտի կռվել,
Հոր գլխարկը պատվով կրել:
Եվ վերջապես
Այն գլխարկի համար է, որ
Կոմունար են կոչում իրեն...

4.

Անցնում էին օրերը տաք
Գնդակի տակ,
Մահ էր չորս դին...
Ու հասակ էր առնում այսպես
Այն քաջորդին...

5.

Եղավ այնպես, որ թեժ մարտում
Ջոկատն ահեղ ծուղակն ընկավ.
Շուրջը՝ ժայռեր, ներքև՝ անդունդ,
Դեմը զորքն է թշնամական,
Ո՛չ ջուր, ո՛չ հաց,
Գնդակից էլ դաժան սովն էր
Չոր մատներով խեղդում նրանց:

6.

Սեղմվում էր շուրջը նրանց
Մահվան օղակն հետզհետե.
Դաժան մարտեր,
Թվում է էլ հույս չմնաց...
Բայց շտաբին պիտի հայտնել,
Պիտի ճեղքել
Մահվան օղակն, ինչ էլ լիներ:
Վարանում էր պետը սակայն,
Ո՞ւմ ուղարկել:
Եվ մոտեցավ քաջ կապավոր
Այն պատանի կոմունարը:
Պատվի առավ մեծավարի.
— Ես կգնամ, ես լավ գիտեմ
Կածանները մեր լեռների...—
Երկմտում էր պետը մի պահ
Ո՞վ իմանա, ինչ կլինի...
Ու մինչև նա ուշքի կգար,
Տղան չկար:

7.

Գնում էր նա, բայց ոչ արագ,
Շատ էր հյուծել քաղցը նրան,
Մերթ թվում է, որ չի կարող,
Էլ չի կարող առաջ գնալ:
Սուլեց գնդակն ականջի տակ.
— Նկատել են,— խորհեց տղան,
Ձուլվեց հողին,
Բայց սողեսող, գաղտագողի
Պիտի գնալ, անվերջ գնալ,
Նորից գնդակ, նորի՛ց, նորի՛ց,
Հերն անիծած,
Չե՞ք ճանաչում կապավորին,
Նա կարող է դառնալ թռչուն,
Նա կարող է աչք գողանալ,
Խոտերի մեջ, իբրև մրջյուն,
Ձեր իսկ քթի տակով գնալ...

8.

Աղմուկն արդեն մնաց հեռվում,
Տղան խորը ձորը մտավ.
Հիշեց հորը,
Չէ՞ որ խաղաղ այն օրերում
Նստել են այս ուռենու տակ,
Խմել վարար աղբյուրակից:
Ուշ էր, ելավ,
Արևն արդեն մայր էր մտել,
Երբ դուրս եկավ նա ծմակից:
— Ո՞վ ես, կանգնի՛ր,
Ա՛յ պատանի:
— Կոմունարկան ձեզ չի՞ ասում
Ով կլինի,—
Ասաց պետը՝ իրենց գյուղից,
Դե, իհարկե, նա է, որ կա.
Ասես հորն է գտել նորից:
Եվ պետն ուրախ,
Հենց հոր նման
Գրկեց փոքրիկ կապավորին...

9.

Եվ օգնական վաշտը կարմիր
Լուսադեմին
Շարժվեց առաջ...
Տեսեք հիմա այն պատանուն,
Ի՞նչ արագ է վաշտը տանում:
Հասան լեռան ժեռ փեշերին,
Այնտե՛ղ, վերո՛ւմ,
Թեժ մարտերում
Ջոկատն իրենց կանգնած է դեռ...
Դիմանում է սով ու ցավին,
Թեկուզ մահվան օղակն արդեն
Հասել էր բերդ-քարանձավին...

10.

Եվ թիկունքից հարվածն իջավ,
Ու լուսացավ գիշերն ասես
Տեղատարափ գնդակներից:
Բայց լսեցի՞ք,
Խավարի մեջ այն ո՞վ ճչաց,
Այնտեղ նայեք՝
Մի՞թե նա է,
Իսկ վաշտն ահա
Օղակն առավ օղակի մեջ,
Մարտիկները դուրս նետվեցին
Այն պաշարված քարանձավից
Ու առաջին հարցումն արին.
— Որտե՞ղ է նա...—
Եվ ամենուր
Փնտրում էին փրկարարին.
Մեկը հանկարծ
Ժայռակողի մասրենու տակ
Գտավ նրան, ավա՛ղ, խփված:
Ընկած էր նա,
Կրծքի վրա արյունամած
Հոր գլխարկը ամուր սեղմած...

11.

Օ՜, լեռնային մեր լուսաբաց,
Ինձ թվում է, որ արևը
Երբ ծագում է,
Կոմունարի
Գլխարկն ունի գլխին դրած...



# ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄՅԱՍՆԻԿՅԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՆԱԽԱԳԱՀԸ

*ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Կան մարդիկ, որոնց կյանքին ու գործունեությանը ծանոթանալուց հետո, մի պահ ուզում ես հավատալ, որ ոչ թե դարն է ծնել նրանց, այլ նրանք են կերտել ժամանակը, իրենց բոցավառ շնչով թափ հաղորդել նրան: Դրանցից է հայ մեծ հեղափոխական Ալեքսանդր Մյասնիկյանը:

Ալեքսանդր Ֆեդորի Մյասնիկյանը ծնվել է 1886 թ. փետրվարի 9-ին Նոր Նախիջևանում: Ութամյա Ալեքսանդրը հաճախել է տեղի Սուրբխաչ վանքի ծխական դպրոցը, ապա սովորել հայկական սեմինարիայում: Ուսման տարիներին նա հատկապես մեծ հետաքրքրություն է ցուցաբերել հայ գրականության նկատմամբ, կարդացել Խ. Աբովյանի, Մ. Նալբանդյանի, Ռ. Պատկանյանի, Րաֆֆու ստեղծագործությունները: Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» դառնում է պատանի Ալեքսանդրի ամենասիրելի գիրքը, իսկ վեպի հերոս Աղասին՝ նրա իդեալը:

Սովորածը խորացնելու, նոր գիտելիքներ ձեռք բերելու տենչը Ալեքսանդրին 1904 թ. տանում է Մոսկվա, որտեղ նա ընդունվում է Արևելյան լեզուների ինստիտուտը (Լազարյան ճեմարան): Հեղափոխական Մոսկվան մեծ ազդեցություն է գործում երիտասարդ Ալեքսանդրի վրա: Նա ականատես է լինում 1905 թ. հոկտեմբերյան ընդհանուր գործադուլին, ապա դեկտեմբերյան զինված ապստամբությանը: Բարիկադային մարտերը, աշխատավորների ընդվզումներն ու ցարիզմի դաժանությունը ցնցում են, պայքարի և սխրանքի մղում հայ երիտասարդին: Ծանոթանալով մարքսիստական գրականությանը և ՌՍԴԲԿ ծրագրին, նա 1906 թ. մտնում է լենինյան կուսակցության շարքերը: Հասկանալով, որ իսկական հեղափոխական դառնալու համար անձնազոհությունից ու քաջությունից բացի, անհրաժեշտ են նաև խոշոր գիտելիքներ, Ալեքսանդր Մյասնիկյանը ուսումնասիրում է Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Լենինի աշխատությունները, Չ. Դարվինի, Դ. Տիմիրյազևի և այլ բնագետների ուսմունքները: Եվ ահա քսանամյա Ալեքսանդրը գրում է «Հասարակական դասակարգերի մասին» աշխատությունը, որտեղ բուրժուական հասարակության դասակարգերի նրա շնութագրումը ցույց է տալիս, որ նա արդեն գաղափարապես ձևավորված հեղափոխական է: Ցարական ոստիկանությունը ձերբակալում է Ալեքսանդրին և որպես կայսրությանը «վտանգ» ներկայացնող անձնավորություն, արտաքսում Մոսկվայից:

Գալով Բաքու, Ալ. Մյասնիկյանը հեղափոխական աշխատանքը շարունակում է ականավոր հեղափոխականներ Ս. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ս. Սպանդարյանի, Պ. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի հետ: Շուտով նա նույնպես դառնում է Բաքվի նավթագործ բանվորների սիրելին, իր կրքոտ ելույթներով հմայում բոլորին:

Ուսումը շարունակելու ձգտումը Ալեքսանդրին կրկին Մոսկվա է տանում, ուր և նա 1911 թ. առաջին կարգի դիպլոմով ավարտում է Մոսկվայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: Ուսման տարիներին նա չի դադարեցնում հեղափոխական գործունեությունը: Տալով ուսանող Ալեքսանդրի բնութագիրը, ականավոր հեղափոխական Ս. Կիրովը գրել է. «Նա բաց չէր թողնում ոչ մի րոպե, և շրջապատված լինելով պաշտոնական ուսման ծրագրով նախատեսված բազմաթիվ գրքերով, այդ երիտասարդ ուսանողն իսկույն առաջ էր քայլում մյուս ուսանողներից և զբաղվում փայլուն տեղերից մեկը ուսանողական սոցիալ-դեմոկրատական խմբակների ղեկավարման գործում»: Ալ. Մյասնիկյանը, միաժամանակ, կատարում էր գրական, հրապարակախոսական աշխատանք, հրատարակում է «Միքայել Նալբանդյան» և «Ազգային հարցի առթիվ» գրքերը:

1914 թ. բոլշևիկյան կուսակցությունը Ալ. Մյասնիկյանին ուղարկում է Կովկաս, սակայն սկսվում է I համաշխարհային պատերազմը և, հազիվ Ռոստով հասած, Մյասնիկյանը կանչվում է զինվորական ծառայության: Նա գնդում ստեղծում է ընդհատակյա բոլշևիկյան խմբակ, զինվորներին բացատրում պատերազմի իմպերիալիստական բնույթը: Նրա հեղինակությունն արագորեն աճում է, ընտրվում է Արևմտյան ռազմաճակատի ռազմաճակատային կոմիտեի անդամ, կոմիտեում դառնում բոլշևիկյան ֆրակցիայի ղեկավարը:

Չզձգվող պատերազմը օրավուր մոտեցնում է ցարիզմի խորտակումը: 1917 թ. Պետրոգրադում բռնկվում է Փետրվարյան հեղափոխությունը: Այդ բուռն իրադարձությունների ընթացքում ավելի ու ավելի է բացահայտվում Ալ. Մյասնիկյանի կազմակերպչական տաղանդը, անսասան կամքը և անհատնում եռանդը:

Նա Մինսկում ստեղծում է բանվորների և զինվորների սովետ, պայքար ծավալում Ժամանակավոր կառավարության հակահեղափոխական գործունեության դեմ, հանդես գալիս «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգով, հիմնադրում «Զվեզդա» բոլշևիկյան թերթը, որը նույն անունով էլ հրատարակվում է մինչև օրս: Ալ. Մյասնիկյանը ելույթ է ունենում 1917 թ. հուլիսի 26-ին Պետրոգրադում բացված բոլշևիկյան կուսակցության VI համագումարում՝ նվիրված զինված ապստամբության կազմակերպմանը: Վերադառնալով Մինսկ, նա շարունակում է պայքարը սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար: 1917 թ. հոկտեմբերի 26-ին Պետերբուրգում Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի հաջորդ օրը, Ալ Մյասնիկյանը Մինսկի սովետի նիստում Բելոռուսիան հռչակում է սովետական: Նույն օրը ստեղծվում է Արևմտյան մարզերի ռազմահեղափոխական կոմիտե, որի գլուխ է կանգնում Ալ. Մյասնիկյանը:

1917 թ. դեկտեմբերին Ալ. Մյասնիկյանը կանչվում է Պետրոգրադ և նշանակվում Սովետական Ռուսաստանի բոլոր զինված ուժերի գերագույն գլխավոր հրամանատարի ժամանակավոր պաշտոնակատար: Նա ջանք չի խնայում սովետական բանակի ուժերը համախմբելու, հակահեղափոխության զինված դիմադրությունը ճնշելու համար: Շուտով Մյասնիկյանը կրկին մեկնում է Արևմտյան ռազմաճակատ, անձամբ մասնակցում Բելոռուսիա ներխուժած գերմանական իմպերիալիստների դեմ մղվող մարտերին: Իսկ 1918 թ. գարնանը նա արդեն Պոլոցժյան ռազմաճակատի գլխավոր հրամանատարն է, կռվում է Անտանտի երկրների կազմակերպած խռովության դեմ: 1918 թ. ամռանը Ալ. Մյասնիկյանը կրկին Բելոռուսիայում է, լուծում է Բելոռուսական ՍՍՀ ստեղծման դժվարին խնդիրները: 1918 թ. դեկտեմբերի 30-ին տեղի ունեցած Բելոռուսիայի կոմունիստական կուսակցության առաջին, հիմնադիր համագումարում Ալ. Մյասնիկյանը ընտրվում է Կենտկոմի բյուրոյի նախագահ, իսկ 1919 թ. հունվարին նորաստեղծ Բելոռուսական ՍՍՀ Կենտգործկոմի նախագահ: Տարիներ հետո Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմը գրել է՝ «Ընկեր Մյասնիկյանի անունը, որպես Բելոռուսիայի կոմունիստական կուսակցության հիմնադրի և որպես Սովետական Բելոռուսիայի կառուցողներից մեկի, ընդմիշտ կմնա բելոռուս աշխատավորների հիշողության մեջ»:



*Մ. Սարյան — Ալ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆ*

1919—1920 թթ. Ալ. Մյասնիկյանը ՌԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի քարտուղարն էր, պայքարում էր սովետական իշխանության թշնամիների դեմ, մերկացնում հակակուսակցական, ընդդիմադիր խմբերը:

1920 թ. Հայաստանում հաղթանակել էր սովետական իշխանությունը, սակայն երկրի ներսում վիճակը դեռևս մնում էր բարդ և լարված, թուրքերը իրենց ձեռքին էին պահում Ալեքսանդրապոլը, սով էր, շարունակվում էին մարտերը արտաքին ու ներքին թշնամիների դեմ: Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ, կուսակցությունը որոշում ընդունեց Ալ. Մյասնիկյանին ուղարկել Հայաստան: Հայ հեղափոխականը մեծ ուրախությամբ ընդունեց այդ որոշումը, նա ջանք ու եռանդ չէր խնայել Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար, իսկ այժմ նրան վիճակվում էր անմիջականորեն ծառայել իր ժողովրդի բարօրությանը: Գալով Հայաստան, նա իր հետ բերեց Լենինի հայտնի նամակը՝ Անդրկովկասի աշխատավորներին ուղղված, որը գործունեության ծրագիր էր նրանց համար: Ալ. Մյասնիկյանը ժողովրդի հետ հենց առաջին հանդիպմանը հայտարարեց. «Մենք եկել ենք այստեղ ոչ թե քաղաքացիական կռիվ մղելու, չարչարելու, այլ աշխատավորությանը տանելու դեպի խաղաղ, հանգիստ աշխատանք, առանց շահագործման, առանց կռվի, դեպի կոմունիզմ»: 1921 թ. մայիսի 21-ին ընտրվելով Հայկական ՍՍՀ Ժողկոմխորհի նախագահ, Ալ. Մյասնիկյանը սկսեց

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

# ՍԱ ՄԵՐ ԳՅՈՒՂՆ ԷՐ...



Այս մեր գյուղն էր, Քասախի ափին, ժայռերի վրա, անլույս և անջուր, խճճված, նեղ փողոցներով: Խմում էինք ղարավոր առվի ջուրը: Փողոցները լուսավորվում էին, երբ արևը հասնում էր զենիթին: Քարե՛ր, քարե՛ր և ժայռե՛ր, որձաքարից շարած տներ, լայն և մեծ դալաններով մուտքեր, դալաններում՝ ջրի կտման քարեր, կժեր, բահեր, խնոցիներ, լայն թախտեր՝ այսպիսին էր մեր գյուղը, որ դարերով եկել մեզ էր հասել: Ամռանն այրվում էր կիզիչ արևից մեր քարոտ գյուղը, ձմռանը՝ կուչ գալիս ցրտից, մի բուռ էր դառնում, անձրևներից ծեծվում, քամիներով մտրակահարվում: Գիշերները անցուդարձ չկար նրա փողոցներով, շները հաչում էին փակ դռների ետևը: Գիշերվա մթից սևանում էին տները, նմանվում քարանձավների:

Մեր գյուղի գիշերները մութ էին: Հիմա այդպիսի մթություն չկա: Ես սիրում էի մեր գյուղի հարդագողի ճանապարհը, մեր լուսաստղը, և կաքավների կղկղոցները: Գյուղի այն մասը, որտեղ գտնվում էր մեր տունը, կոչվում էր Խչմարագողի թառակ: Ես սիրում էի Խչմարագողի թառակը, սիրում էի մեր այգիները՝ Խընթերքը, Վարդանաքակերը, Խոպանները, Էրերի տակը, ձորերը, դպրոցը, որտեղ սովորել էր հայրս, և նույնիսկ, Անթանենց Ամասի խռպոտ ձայնը, որ լսվում էր ձմռան ցուրտ գիշերներին մեր պատուհանի տակ.

— Վե՛ր կաց, ախպե՛ր որդի, գնանք օչխա կտրելու:

Դուրս էի գալիս տնից: Շահավիկենց տան անկյունում կանգնած էին լինում Քյառոնց Գևորգը, Մուխսոնց Հմայակը, և մենք գնում էինք Ամասի հետ օչխա կտրելու: Մտնում էինք Մուխսոնց, Ճանճաքանենց ձորերը, օչխա էինք կտրում, կապույտ ձուկ, ճանառ էինք հանում հատուկ պատրաստված հորերից (օչխաներից), տուն էինք բերում և առավոտը թարմ ձուկ էինք ուտում: Անթանենց Ամասը նշանավոր օչխա կտրող էր: Եվ երբ Գևորգի մայրը ձուկը տապակում և փըրփուր լավաշի հետ դնում էր սեղանին, երբ գինին էր ժամանում ու բացվում իր տեղը, Ամասը տխրում էր, մռայլվում, ոչինչ չէր ուտում, ձկան համն էլ չէր տեսնում, խմում էր իր բաժին գինին, կամաց երգում իր սիրած երգն ու թողնում մեզ, հեռանում էր տնից:

Ես սիրում էի ձմռան երկար գիշերները նստել տաք սենյակում աշտարակցիների հետ և լսել սերնդեսերունդ նրանց հասած հին-հին զրույցները: Այս քարոտ գյուղի տներում մեծ մարդիկ էլ կային: Ճրագի լույսի տակ գլուխը խոնարհած, գերմաներենից Մարքս էր թարգմանում շիկամազ մի աշտարակեցի, թարգմանում էր Կանտ, Հոմերոս: Ո՞ւմ մտքով կանցներ, որ այդ մամռապատ

գլխավորել քաղաքների և ձեռնարկությունների վերականգնման, սովի և համաճարակների վերացման, աշխատավորների կենսական պայմանների բարելավման այն ժամանակների համար չափազանց դժվարին գործը: Ալ. Մյասնիկյանը մեծ հոգատարություն էր ցուցաբերում որբ երեխաների նկատմամբ, գիտենալով, որ նրանք են որոշելու Հայաստանի ապագան: Նաև մեծ ուշադրություն հատկացրեց նա գրականության, արվեստի և գիտության զարգացմանը: Տարբեր երկրներում գտնվող մշակույթի և գիտության հայ գործիչներին կոչ արվեց վերադառնալ Սովետական Հայաստան, մասնակցել հայրենիքի կուլտուրական շինարարությանը: Ալ. Մյասնիկյանը ուրախանում և հպարտանում էր խաղաղ շինարարության բնագավառում արագորեն ձեռք բերված հաջողություններով՝ «Ջրանցքներ: Բամբակ: Հաց: Խաղող: Էլեկտրակայաններ, բաներ որոնց հետքն անգամ չի եղել առաջներում: Մայրենի ժողովրդական լեզու: Տասնյակ ամսագրեր ու թերթեր: Հարյուրավոր գրքեր: Համալսարան: Գրադարաններ: Թանգարաններ: Կոնսերվա-

# ՍԱ ՄԵՐ ՔԱՂԱՔՆ Է 60



Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

տնակում նստած մարդը Լենին է թարգմանում, «Մանիֆեստ», Պլեխանով: Ի՞նչ կմտնայիր, երբ նույն մարդը օրը ցերեկով էտոցը գոտկի տակ, մանգաղը ձեռքին, բարձրաձայն ծիծաղելով և գոռգոռալով, էշին նստած, այգի է գընում, գնում է խոպանները, խընթերքը կամ Վարդանաբակերը՝ խոտ հնձելու, հնձանում խաղող տրորելու, և հագնված է այնպես, ինչպես բոլոր աշտարակեցիները:

Ահա իր կնոջ թևը բռնած Ակոյենց Սարգիս բիձան դուրս է գալիս տնից: Ինքը նստում է էշին, կինը քայլում է կողքից, և այգի են գնում: Ո՞չ մտքով կանցներ, եթե չճանաչեր նրան, որ այդ մարդը վաթսուն տարի աշխատել է Ռուսական կայսերական բանկում, սովետական կարգերի հաստատման հենց առաջին տարվանից բանկային այն աշխատողներից մեկն է եղել, որոնց պահպանման համար հոգ է տարել ինքը՝ Լենինը, որ նա կրուցել է Լենինի հետ: Եվ հիմա նա տուն է դարձել, եկել է Աշտարակ՝ իր պապերի կողքին թաղվելու, և խոսում է Աշտարակի բարբառով:

Մտքովդ կանցնե՞ր, եթե չճանաչեիր, որ այս ծանրաքայլ ու մռայլադեմ մարդը, որ նստել հանգըստանում է իր տան դռան քարին՝ նույն ինքը, ակադեմիկոս Գրիգոր Ղափանցյանն է: Կամ այս պատանին, որ մի ժամանակ ոտքով գնում էր Աշտարակից Էջմիածին սովորելու և ոտքով էլ ետ էր գալիս, այս բարձրահասակ և լայնաքայլ աշտարակեցին կարող էր մի օր մեծ գիտնական դառնալ և նրա անունով կոչվեր Լուսնի խառնարաններից մեկը՝ Նորայր Սիսակյանի խառնարան:

Եթե չճանաչեիր, ի՞նչ կիմանայիր, որ այս նիհար ու ջղուտ աշտարակեցին Հուսիկ Շահպիկյանն է, մի քանի անգամ փախել է բանտից... գնդակահարություններից ու 1920 թվականին Կարմիր բանակի կորամասերի հետ, որպես նրա քաղաքական գործիչներից մեկը, Աշտարակ է մտել և հայտարարել խորհրդային իշխանության հաստատումն իր հայրենիքում: Ինչպե՞ս և ինչի՞ց իմանայիր, երբ նա այնքան համեստ էր և «հասարակ»:

Այո՛, այս էր մեր գյուղը՝ Քասախի ափին, ժայռերի վրա դարեր ծվարած, դարերի վկան, բարձրադիր ու վեհ: Այստեղ են ծնվել Պերճ Պռոշյանը, Սմբատ Շահազիզը, Ներսես Աշտարակեցին, Փարպեցին և ուրիշ շատերը, ու շարունակում են ծնվել նոր տաղանդավոր պոետներ, գրողներ, դերասաններ, հասարակական գործիչներ, լրագրողներ, թարգմանիչներ: Աշտարակը շարունակում է հավատարիմ մնալ իր տաղանդածին արգանդին:

Այս մեր քաղաքն է նույն Քասախի ափին, ժայռերի վրա:

Հազարամյակներ շարունակ բազմած է այդտեղ: Քասախի՛ ափին, իր հազարամյա ճակատագրով: Եղել է երբեմն խրոխտ, երբեմն ընկճված, ըմբոստ կամ հուսահատ: Իսկ այժմ, արդեն վաթսուն տարի է, ապրում է ապահով և իսկական կյանքով:

Այս մեր քաղաքն է, Քասախի ափին, ժայռերի վրա, մեր աչքի լույս պապենական տունը:

---

տորիա... դարձյալ և դարձյալ շատ բան...»

1922 թ. կազմվեց անդրկովկասյան երեք հանրապետությունների ֆեդերացիան և Ալ. Մյասնիկյանը ընտրվեց Անդրֆեդերացիայի խորհրդի նախագահ, իսկ ապա Անդրկովկասյան Երկրային կոմիտեի առաջին քարտուղար, մեծ դեր խաղալով Անդրկովկասի ազգերի միջև բարեկամության հաստատման, կազմակերպման գործում:

Այո՛, երբ հայացք ես գցում Ալ. Մյասնիկյանի անցած կյանքի ուղուն, կատարած գործերին, դժվարությամբ ես հավատում, որ մի կյանքը բավական է այդքանն անելու, սկսած գործը մինչև վերջ հասցընելու, երբեք չհոգնելու համար: Բայց դեռ որքան էլ կաներ, եթե 1925 թ. մարտի 22-ին նրան Թիֆլիսից Սուխում՝ Աբխազական Ինքնավար Հանրապետության Սովետների համագումարին տանող ինքնաթիռը վթարի չենթարկվեր:

Տեղին է մտաբերել Ս. Կիրովի խոսքերը. «Մյասնիկյանի կյանքը այն կորագիծն է, որը գծել է մեր հեղափոխությունը»:





# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

Վարպետ Մկրտիչը աշխարհ տեսած մարդ է: Եթե զգույշ նայեք նրա աչքերին, շատ բան կկարդաք. մի ամբողջ պատմություն կա նրա աչքերում: Շատ-շատերի նման նա էլ դառն ու սարսափներով լի մանկություն է ապրել, սակայն նայելով աշակերտների ուրախ ու երջանիկ խմբերին, պայծառանում են նրա աչքերը, մի ժպիտ է անցնում խորշոմած դեմքով ու կարոտով ասում է.

— Երանի ձեզ, բալիկնե՜ր...

Որմնադիր է եղել վարպետ Մկրտիչը, մուրճ ու ուղղալարից անբաժան: Կարիքն ու զրկանքը նրան վաղ հասակից նետել են մեծ քաղաքների հորձանուտը...

Մի օր էլ նա գյուղ է եկել՝ Սևանի կողմից դեպի Երևան շարժվող Կարմիր բանակի շարքերում, զինվորական համազգեստով, գլխին՝ սրագագաթ սաղավարտ գլխարկ:

Խթանելով ձիուն, մտել է գյուղ, կարմիր դրոշը ձեռքին: Բոլորն ընդառաջ են եկել:

— Սիրելի՛ համագյուղացիներ, մենք ձեզ համար խորհրդային իշխանություն ենք բերել, այսուհետև հողը գյուղացուն է պատկանելու, գործարանը՝ բանվորներին,— հայտարարել է նա,— այսուհետև ազատությունն ու եղբայրությունն է թագավորելու աշխարհում:

Հոկտեմբերյան հեղափոխության կենարար արևը շռայլ ժպտացել է աշխատավոր մարդկանց: Գյուղում մշտական բնակություն է հաստատել վարպետ Մկրտիչը:

Ինչեր են արել գյուղի մարդիկ ալ դրոշի հովանու տակ... Մի հին նկար է մնացել՝ մեր հին գյուղի նկարը: Նայելով դրան՝ սիրտդ ճմլվում է... Որքա՜ն խեղճ են եղել, որքա՜ն թշվառ: Եթե հինավուրց հաստաբուն ընկուզենին չլիներ, դժվար թե կռահեիր, որ դա մեր գյուղն է... Վարպետ Մկրտիչը մուրճն ու ուղղալարը այս անգամ գործի է դրել գյուղի բարեկարգման համար: Վեր են խոյացել դպրոցի, ակումբի շենքերը, կոլտնտեսականների լուսավոր ու բարեկեցիկ առանձնատները...

Կառուցվում ու շենանում էր մեր գյուղը, երբ մի օր էլ պատերազմի բոթն է խուժել: Հարյուրից ավելի երիտասարդ մարդիկ մանգաղն ու գերանդին, մուրճն ու եղանը փոխարինել են զենքով, որպեսզի պաշտպանեն կարմիր դրոշն ու նրա նվաճումները:

Գյուղում մնացածները աշխատել են և՛ իրենց, և՛ գնացածների փոխարեն, աշխատել են գիշեր-ցերեկ: Կոլտնտեսության գրասենյակում խոսուն թվեր կան, թե ինչ է տվել այս փոքրիկ գյուղը ռազմաճակատին, որքան հացահատիկ, միս, յուղ, բուրդ, դրամ...

Երևսուն խիզախների բախտ չվիճակվեց անցնել տունդարձի ճանապարհով, իսկ նրանցից շատերը ինձանից հազիվ երկու-երեք տարով են մեծ եղել...

Եվ վեր է խոյացել անմահության հուշարձանը: Նրանց անվան յուրաքանչյուր տառ փորագրելիս յոթ կաթիլ արցունք է գլորվել վարպետի աչքերից, յոթ անգամ կոկորդը վշտից սեղմվել է, յոթ անգամ սիրտը կանգ է առել, յոթն հառաչանք է թռել շուրթերից...

Այսօր վարպետն էլ չի կարողանում քարը քարին դնել, նա իր արհեստն ու շնորհքը, իր աշխատասիրությունը փոխանցել է որդիներին, թոռներին ու նրանց շատ հասակակիցների:

— Իմ մուրճի ձայնը երբեք չի լռի,— ասում է նա,— այսօր մուրճս և ուղղալարս որդիներիս ու թոռներիս ձեռքին է, նրանցից կանցնի ծոռներիս, ու այսպես դարեր ու դարեր...

Այո, հիմա նրանք են, մեր հայրերն ու մայրերն են շենացնում գյուղը, որն անճանաչելի է դարձել: Էլ Հարոն տասնյակ կիլոմետրեր ոտքով չի չափի՝ հիվանդին մի խնձոր բերելու համար... Այժմ մեր տանձն ու խնձորը հայտնի են շատ-շատերին: Դա խոսուն վկան է այն բանի, որ վարպետ Մկրտչի, նրա հասակակիցների, մեր պապերի գործը փառքով է շարունակվում, որ Հոկտեմբերի կարմիր դրոշը մեր հայրերի ու մայրերի հմուտ ձեռքերում է: Իսկ վաղը մենք պետք է նրանց ձեռքից վերցնենք ու առաջ տանենք այդ դրոշը: Դրա համար համառորեն սովորում ենք, տիրապետում գիտելիքներին, որպեսզի վաղվա օրը Հոկտեմբերի կարմիր դրոշը դարձյալ հուսալի ձեռքերում լինի:

*ԴԱՎԻԹ ՄԱՆՈՒԿՅԱՆ*

*Նաիրիի շրջ. գ. Թզիթ, 9րդ դաս. աշակերտ*



Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

# ԾԻԱԾԱՆ

ՀԱԿՈԲՅԱՆ

Դեպի երկինք է գյուղը ձգվում՝
Անձրևից ճերմակ թևեր առած,
Եվ բարդիները կամաց ճկվում
Ու թափառում են՝ խարույկ դառած:

Քամին ընդառաջ թռչում նրանց
Եվ փսփսում է ինչ-որ բառեր,
Դաշտերի խորքում խոտերը թաց
Կանաչ ուռկանն են իրենց փռել:

Նրանք որսում են կայծակ ու ամպ
Եվ փափոցը՝ աշխետ-քամու,
Որը նուրբ ու թաց շնչառությամբ
Դեպի-սարալանջն է սլանում:

Այնտեղ արևը ահա նորից
Լուռ նկարում է լույս ու ստվեր,
Եվ ամպերի նեղ բացվածքներից
Երկինքն է սուրում սարերն ի վեր:

Հետո լանջերով իջնում ! ցած,
Յոթը գույներով դաշտում փայլում,
Կարծես իր շքեղ պոչը բացած՝
Մի սիրամարգ է այնտեղ քայլում:

# Ա՜Յ ԹԵ ՓՈԽՎԵԼ ԵՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԸ

ՅԱՇԱ ԲԱԲԱՅԱՆ

*Մայրս պատուհանից նայում է դուրս:*

*— Նայի՛ր, Կարե՛ն ջան, հլա՛ մի նայիր, տես ո՞վ է գալիս:*

*Սիարոնն է, քեռի Խաչատուրի եղբայրը: Հարևան Արտեմի ցանկապատի տակ կանգնեց ու ձենը գցեց գլուխը: Էլի կռիվ պիտի սարքի, էլի խոզը երևի մտել է բոստանը: Ձենը գլուխը գցած կանչում է: Տնից դուրս եկող չկա, պատասխանող չկա, վախենում են...*

*— Գոմից չեմ հանի, մինչև չըբերեք վնասը...*

*Ու գնաց. «Սովիած կապանի»,— անցավ մտքովս:*

*Մայրս դարձյալ փողոցի կողմն է նայում:*

*— Նայի՛ր, Կարե՛ն ջան, հլա՛ մի նայիր, տես ո՞վ է գալիս:*

*Եկողը Սիմոնենց Անդրին է: Հիշում եմ Նախշունի տղա Վարդանի երեկվա պատմածը և ծիծաղից թուլանում եմ: Ախր, չգիտեք ինչ է եղել: Մայրս էլ անտեղյակ է, պատմում եմ: Հարևան գյուղի միջով անցնելիս, Անդրին հայտարարել է, որ ինքը հյուսն է, որ ձեռքից ամեն ինչ գալիս է, կըպատրաստի, ինչ որ պատվիրեն:*

*— Ինձ համար մի սեղա՛ն պատրաստիր,— խնդրել է մեկը:*

*— Աչքիս վրա,— խկույն համաձայնել է Անդրին, և բակի թըթենու տակ գործի անցել: Մինչև կեսօր չարչարվել է, մի սեղան պատրաստել: Պատվիրողը մի տասանոց է խոթել նրա գրպանը, ասելով.*

*— Բարո՛վ ծախսես, ուստա՛:*

*Հետո ցանկացել է սեղանը տուն տանել: Բայց ինչպե՞ս կըտաներ, երբ այն մեխած է եղել թըթենուն: Շարժել անգամ չի կարողացել:*

*— Էս ի՞նչ ես արել, ուստա՛,— կարմացած հարցրել է նա:*

*— Բան չկա,— հանգիստ պատասխանել է «ուստան»,— ձմռանը կկանչես, կգամ մեկն էլ տանը կպատրաստեմ...*

*Մայրս ծիծաղում է քահ-քահ:*

*Մի անգամ էլ որմնադրի գործիքներ է առել Անդրին ու ճամփա ընկել: Մի մարդ է ճամփեցրին հանդիպել, որ տուն է ուզել կառուցել: Խոսել են, պայման կապել, և Անդրին մուրճը վարկել է քարին: Մի շաբաթից Անդրիի ոտքերը կտրվել են գետնից, բարձրացել են տան պատերը: Մեկ էլ տանտերը նկատել է, որ նորակառույց տունը ո՛չ դուռ ունի, ո՛չ պատուհան: Վերցրել է «վարպետի» գլխարկն ու շպրտել չորս պատերից ներս: Հանգիստ իջել է Անդրին պատից ու տուն վերադարձել գլխաբաց:*

*Կուշտ-կուշտ ծիծաղում է մայրս: Մեկ էլ թե.*

*— Կարծես կանչող կա,— հլա մի դո՛ւրս արի, տես ո՞վ է, Կարե՛ն ջան:*

*Վազում եմ: Շուշանիկի Ռոբիկն է, ինձ է կանչում:*

*— Չարչոնք թոնիրը վառել են,— ասում է,— չե՞ս գալիս:*

*«Նայած վառողն ով է,— մըտածում եմ ես,— եթե Հովսեփենց Աշխենը լինի, հաց չի տա, Մուքելանց Անուշն էլ չի տա, Սիրվարդն էլ, Պայծառը... Եթե Պետունց Մինան լինի, կտա, Ղասումենց Զա-*




# ԵՐԵՎԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ 150

Անդրկովկասի ժողովուրդները դարեր շարունակ հեծում էին սուլթանական Թուրքիայի և շահ-խանական Պարսկաստանի ծանր լծի տակ, ենթարկվում անմարդկային սոցիալական ու ազգային ճնշումների: Մեր ժողովրդի առաջադեմ գործիչները՝ նրա ազատագրական պայքարի կազմակերպիչները, դիմումներ էին անում Ռուսաստանին ու օգնություն խնդրում:

1801 թ. Վրաստանը և 1813 թ. Ադրբեջանն ու Հայաստանի մի քանի շրջաններ ազատագրվեցին ու միացվեցին Ռուսաստանին: Սակայն շահի արքունիքը չհաշտվեց այդ «կորուստների» հետ: Օգտվելով 1820-ական թվականներին Ռուսաստանում ստեղծված դրության լարվածությունից՝ պարսկական կորքերը հարձակում սկսեցին, փորձելով Անդրկովկասը վերստին ենթարկել շահին: Այսպես սկսվեց 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմը: Ետ շպրտելով թշնամուն, ռուսական զորքերը հակահարձակման անցան, ազատագրելով գյուղեր ու ավաններ: Ռուսական զորքերի շարքերում էին 1825 թ. դեկտեմբերին ապստամբած գորամասերի զինվորները և դեկաբրիստ-հեղափոխական պաշտոնազուրկ սպաները, որոնց ցարն ուղարկել էր ռազմաճակատի առաջին գիծը՝ նրանցից «ազատվելու» հույսով: Եթե ցարն ու իշխող դասերը վարում էին նվաճողական պատերազմ, ապա ռուս զինվորները, առաջավոր սպայությունն ու մասնավորապես պատժապարտ դեկաբրիստները կռվում էին այն պարզ գիտակցությամբ, որ պետք է ազատել տառապող ժողովուրդներին: Պատերազմի մասնակից դեկաբրիստ Ե. Լաչինովը իր «Օրագրությունների» մեջ գրում է. «Աննկարագրելի են ուրախության այն տեսարանները, որոնցով հայ ընտանիքները դիմավորում էին մեզ»:

Ռուս գրող ու դիվանագետ Ա. Ս. Գրիբոյեդովը, որ մեծ դեր խաղաց Անդրկովկասի ազատագրման գործում, իր օրագրում նշում • է, որ այդ պատերազմը «ամենամարդասիրական պատերազմն է», որ Հայաստանի նվաճումը արտասովոր ուրախությամբ է ըն-

*ռին էլ կտա, Շամամ աքիրն էլ»...*

*— Ո՞վ է վառել, Ռոբի՛կ,— հարցնում եմ:*

*— Սիրվարդը...*

*— Էլ գնում ենք ի՞նչ անենք,— ասում եմ,— մեկ է, հաց չի տա:*

*— Արի՛,— ձեռքով է անում,— ցախը ես եմ շալակել տարել, կտա:*

*Գնում ենք: Վազելով թոնրի մոտ ենք հասնում: Ամբողջ թաղի երեխաներն են հավաքվել: Վերին թաղից Գարուշն ու Սեյրոբն էլ են եկել: Նստոտել են թոնրի շուրջը՝ հայացքները հառել հացթուխ Մինային: Հացթուխ Մինայի երեսը կարմրել է, դարձել թոնրի կրակ: Մեկ-մեկ ջուր է ցանում թոնրի մեջ: Հիմա, երևի, կսկսի հաց թխել: Սպասում ենք: Յուրաքանչյուրս հաց ենք ուզում, տաք-տաք, բուրումնավետ հաց: Ուզում ենք մի լավ ուտել կշտանալ: Կհերիքի՞...*

*Այդ պահին էլ երևաց Սիրվարդը:*

*— Ի՞նչ եք պպզել սոված շների պես,— հեռվից ասաց նա,— հիմա կգամ, ցույց կտամ ձեզ:*

*Բոլորս վայրկենապես փախանք: Մնաց Շուշանիկի Ռոբիկը: Նրան հաց կտան, և Ռոբիկը, ես գիտեմ, հացը կկիսի ինձ հետ: Պատի տակ կուչ եկած սպասում եմ Ռոբիկին: Սիրվարդը եկավ և... այնպես ապտակեց, որ քիչ մնաց Ռոբիկն ընկներ:*

*— Դու ինչո՞ւ ես ցցվել այստեղ:*

*— Ես եմ ցախը բերել, Սիրվա՛րդ մորաքույր,— լացեց Ռոբիկը,— բա չասացի՞ք, որ...*

*— Կորի՛ր,— ձայնը բարձրացրեց նա,— ուրեմն իմ երեխաներիցս պիտի կտրեմ, տամ քե՞զ, հա՞:*

*Կոտրված սրտով թողնում հեռանում է նաև Ռոբիկը: Դառն արտասվում է, բայց ոչ ապտակի համար... Ես վերջին անգամ մի հայացք եմ ձգում թոնրի կողմը և քայլերս ուղղում դեպի տուն:*

*Մայրս նստած իր տեղում, շարունակում է գուլպա գործել: Մոտենում եմ:*

*— Դե շո՛ւտ արա, վերջացրո՛ւ էլի՛, մա՛մ,— գլուխս պտտվում է, աչքերս մթնում են:*

*— Շուտով, շուտով, Կարե՛ն ջան, քիչ է մնացել...*

*Իսկ հետո, թե.*

*— Դու է՞ն ասա, Պիպոսին կառնե՞ս:*

*Պիպոսը մեր թաղի աղջիկներից է: Նվարդ էր անունը, թե ինչպե՞ս է Պիպոս դարձել, չգիտեմ: Պիպոսը ցնցոտիների մեջ է, ման է գալիս թաղից թաղ, մեկ էլ տեսար ցցվում է այն տղայի կամ աղջկա կողքին, որի ձեռքին հացի պատառ կա... Մոտենո՛ւմ է, մոտենո՛ւմ այնքան, մինչև ձեռքը հասնի ճանկելու համար... Երեկ էլ իմ հացի պատառը փախցրեց:*

*— Չէ՛, չե՛մ առնի, մա՛մ,— ասում եմ,— Պիպոսը գեշ է, Պիպոսը պատառոտված շորեր ունի, Պիպոսը խլում է հացիս պատառը...*

# ՏԱՐԻՆ ( 1827-1977 )

կալվում հայերի կողմից, «անցյալում չտեսնված նվաճվածների ուրախություն»:

Հատուկ ուշադրությամբ ու ոգևորությամբ են ներկայացվում Երևանի համար մղված կռիվները, միջնաբերդի գրավումն ու հայերի փրկության հույզիչ տեսարանները: «Բավական է պատկերացնել բերդի պաշարման ժամանակ նրանց (հայերի) դժնդակ վիճակը, որ հավատաս նրանց արտահայտած զգացմունքների անկեղծությանը»:

Երևանի բերդի գրավումն ու քաղաքի ազատագրումը փաստորեն դարձավ Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացնելու պատմական նշանակալի իրադարձություն: Երևանցիներն ու շրջակա գյուղերի բնակիչները սրտառուչ երախտագիտություն էին հայտնում իրենց փրկիչ ռուս զինվորներին: Ծնողները «իրենց մանկիկներին սեր էին ներարկում դեպի ռուսները»:

Մեծ ոգևորությամբ ու գոհունակությամբ էին լցվել նաև ռուսների սրտերը: «Այս անապատային երկրում,



Ռուբո — ԵՐԵՎԱՆԻ ԲԵՐԴԻ ԳՐԱՎՈՒՄԸ

ուրախությունների այս գերեզմանոցում, մենք, հայրենիքից ու մեզ համար սիրելի ու թանկարժեք ամեն բանից կտրվածներս, հաճույք էինք ստանում այդ րոպեներին, որոնց կնախանձեին բախտից անգամ առավել սիրված՝ երեսառածները»:

Նման մտքեր ու մարդասիրական զգացմունքներ են արտահայտել նաև մյուս առաջավոր ռուս զինվորականները՝ Երմոլովը, Կրասովսկին, Պուշչինը, Բուռցովը, փառապանծ պարտիզան Դենիս Դավիդովը և ուրիշներ: Նրանք այդ պատերազմը դիտում էին որպես մեծ ազատագրական ակտ և գտնում, որ Ռուսաստանը ոչ մի շահադիտական նպատակ չպետք է հետապնդի: Ա. Բեստուժևը գրում է. «Ամոթ ու ծիծաղելի կլինի այդ մասին խոսելը»: Նրանք կասկած չունեին, որ Հայաստանը միանալով Ռուսաստանին, կբուժի իր դարավոր վերքերը, կբարգավաճի: Լաչինովը հույս էր հայտնում, որ «մի քանի դար շարունակվող խռովահույզ քնից հետո, Հայաստանի համար նորից կարող է փայլել ծաղկման դարը այն գիտությունների, արհեստների ու արվեստների, որոնց հնագույն հուշարձանները այնպես առատությամբ սփռված են երևանյան մարզում ու մինչ այժմ էլ ապշեցնում են դիտողներին»:

Երևանի ազատագրումը, որ փայլուն հաջողությամբ պսակվեց 1827 թ. հոկտեմբերի 13-ին (հին տոմարով 1-ին) ապա և Արևելյան Հայաստանի միացումը (1828 թ. փետրվարի 12-ին) սկիզբ դարձավ ռուս և հայ ժողովուրդների պատմական կապերի ու բարեկամության նոր շրջանի: Ռուսաստանի մյուս ժողովուրդների հետ մեկտեղ հայ ժողովուրդը գտավ իր փրկության ու վերածնության մայրուղին:

Բանվոր դասակարգի ղեկավարությամբ, դաշնակցած մյուս եղբայրական ժողովուրդների հետ, հայ աշխատավորությունը մասնակից դարձավ սոցիալական ու ազգային ազատագրության համար մղվող պայքարին, որը պսակվեց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով:

ՎԱԶԳԵՆ ՈՍԿԱՆՅԱՆ

*— Չ՞է, Կարե՛ն ջան,— փորձում է համոզել մայրս,— Պիպոսը լավն է, Պիպոսը մեղք է...*

*Հետո երկար լռում ենք երկուսով: Նայում եմ, գույպան ավարտելու վրա է մայրս: Ուրախանում եմ, շուտով գուլպայի դիմաց հաց կունենանք, հա՞ց... Ես ուշադիր կլինեմ, որ հացիս պատառը Պիպոսը չփախցնի...*



* * *

*Անցել են շատ ու շատ տարիներ: Մոռացվել, գնացել են այդ ժամանակները:*

*Բայց ես հիշեցի, գիտե՞ք ինչու:*

*Հեռուստատեսությամբ մեկը երկար հորդորում էր՝ հարգել հացը, գնել այնքան հաց, որքան հարկավոր է ընտանիքին օրվա ուտելու համար, որպեսզի աղբարկղները չլցվեն հացով:*

*Ա՞յ թե փոխվել են ժամանակները:*

*Շատ են փոխվել նաև մարդիկ: Այդքան շատ ինչո՞ւ են փոխվել:*





# ԻՄ ԱՌԱՋԻՆ ԳԻՐՔԸ

ԳՈՀԱՐ ՄԱՐՏԻԿՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Բոլոր տղաներն էլ գաղտնիք են ունենում: Ես էլ ունեմ: Ու ոչ ոք, ո՛չ հայրիկը, ո՛չ մայրիկը, ոչ էլ... անգամ Գագիկը, այդ մասին չգիտեն: Ճիշտն ասած, շատ եմ ուզում Գագիկին խոստովանել, չէ՞ որ նրանից մոտ ընկեր մեր բակում չունեմ: Կասեի... բայց վախենում եմ վրաս ծիծաղի. ընկերը՝ ընկեր, բայց որ հանկարծ վրաս ծիծաղի՞... ամոթից գետինը կմտնեմ: Գիտե՞ք որն է իմ գաղտնիքը. ոտանավորներ եմ հորինում: Ի՞նչ անեմ, չհորինել չեմ կարող: Մեկ էլ գիշերը քնած ժամանակ գլխումս մի ոտանավոր է գրվում, ու ես վեր եմ թռնում, մթության մեջ մատիտ ու թուղթ գտնում, խկույն խզմզում, որ չմոռանամ: Հետո առավոտյան տեսնեմ՝ ի՜նչ: Բառերը իրար վրա այնպես են խզմզվել, որ չեմ կարողանում կարդալ գրածս: Բայց ցերեկը ուրիշ է: Հորինում ես, գրում, գեղեցիկ նկարազարդում:

Մի անգամ մեր բակում ծառեր տնկեցին, ծառերի տակ նստարաններ դրեցին: Այնքան սիրո՜ւն էր, այնքան սիրո՜ւն, կարծես, խսկական պարտեզ լիներ: Մենք այդ նստարաններին նստում էինք, ծիծաղելի պատմություններ պատմում: Բայց մի օր... ես գիտեմ, թե ովքեր, եկան ծառերը ջարդեցին, նստարանները կոտրեցին:

— Գագո՛, արի՛ դրանց սևը տանք,— ասացի ես:

— Մեր ուժը չի հերիքի,— ասաց Գագիկը:

— Փայտով կծեծենք,— չէի համոզվում ես: Տեսա Գագիկից բան դուրս չի գալիս, գնացի տուն: Նստեցի սեղանի մոտ ու գրեցի.

Մեր բակը փոքրիկ պուրակ դարձրին,
Տնկեցին թփեր, ծառեր, ծաղիկներ.
Փոքրիկ չարագործները մեր բակի
Ծառերի ճյուղերը կոտրատեցին,
Կանաչ թփերը պոկոտեցին,
Շատ վա՜տ արեցին:

Մի քիչ հանգստացա, իջա բակ ու ի՜նչ տեսնեմ, վարպետ Սիմոնը հավաքել է մեր հարևաններին ու ծառերը փչացնողներին խրատում է.

— Ա՛յ բալա, ձեզ համար են տնկել, չէ՞: Դո՛ւք եք խաղալու, դուք եք հովանալու, չէ՞: Այդ անելու բա՞ն էր, որ արել եք,— կարծես լաց էր լինում վարպետ Սիմոնը:

Ես չդիմացա, ետ դարձա ու եկա տուն: Այնպես էի ուզում, որ դրանք, այդ ջարդող-փչացնողները իրենք նորոգեն իրենց փչացրածը, որ նստեցի սեղանի մոտ ու գրեցի.

Բայց հետո իրենց սխալը զգացին,
Ուղղել ուզեցին,
Ծառեր տնկեցին, ծաղիկ ցանեցին
Եվ ամբողջ այգին վերականգնեցին
Շատ ճիշտ վարվեցին...

Գրեցի ու հանգստացա: Մեկ էլ գլուխս պատուհանից դուրս հանեմ ու ի՜նչ տեսնեմ: Վարպետ Սիմոնի գործիքներն առած՝ նրանք՝ փչացնողները նորոգում են նստարանները, իսկ վարպետ Սիմոնը Մուկուչի հետ (վա՜յ, ուզում էի անունը չասել, բայց ոչինչ, նա արդեն զգացել է իր սխալը) գնացել են բերի Անդոյից նոր ծառեր խնդրելու:

«Ամեն ինչ լավ է գնում»,— մտածեցի ես ու նստեցի սեղանի մոտ: Սկսեցի իմ հորինած բանաստեղծության կողքին ծառի ճյուղերն ու նստարանները կոտրող երեխաներին նկարել: Կարծես լավ ստացվեց: Հետո մի կողմ դրեցի այդ թուղթն ու սկսեցի մյուս ոտանավորի կողքին երեխաներին ծառեր տնկելիս ու նստարաններ նորոգելիս նկարել, այնքան լա՜վ ստացվեց, այնքան լա՜վ, որ... ես մտածեցի՝ ինչո՞ւ չարչարանքս իզուր կորչի:

Ավելի լավ է մի սիրուն գիրք դարձնեմ ու վրան էլ գրեմ՝ Կարեն Մարգարյան «Մեր բակը»: Բայց որպեսզի գիրքը իսկականի նման լինի, ներսի կողմում կպցրեցի նկարս, իսկ ամենավերջին էջի վրա գրեցի. «Փոքր տարիքի երեխաների համար»: Ինչպես իսկական գրքերի վրա են գրում: Վերևում էլ ավելացրի՝ «գինը 3 կոպ.»:

Գիրքս պատրաստ էր:

# ԽԻԶԱԽ ԿՆՈՋ ԵՎ ՎԱԽԿՈՏ ՎԱԳՐԻ ՄԱՍԻՆ

(Հնդկական ժողովրդական հեքիաթ)



Մի անգամ մայրը իր երկու տղաների հետ ճանապարհ ընկած գնում էր խիտ անտառի միջով: Անտառում շատ վայրի գազաններ կային: Ամայի արահետով անցնելիս մայրը նկատեց, որ մի վագր հետապնդում է իրենց:

Խիզախ կինը չկորցրեց իրեն: Երբ վագրը արդեն շատ մոտ էր, նա սկսեց կեղծ զայրույթով ապտակել երեխաներին ու աղաղակել. «Նորի՛ց սկսեցիք վիճել: Ի՞նչ է, մի վագրը երկուսիդ քի՞չ է: Դե ոչինչ, այս կիսեք կերե՛ք, հետո գուցե մեկն էլ ձեռք գցենք»: Այս լսելով, վագրը սարսափեց ու գլխապատառ փախավ:

Վազում էր վագրն անտառով և հանդիպեց շնագայլին: «Քեռի, այդ ո՞ւր ես այդպես սլանում»: «Օ՜, մի՛ հարցնի, հարազատս,— պատասխանեց վագրը:— Մահից եմ փրկվել: Այնտեղ ,արահետով վագրեր խժռող կինն է անցնում իր երկու զավակների հետ: Տղաներից ամեն մեկը միանգամից մի ամբողջ վագր է ուտում: Շո՛ւտ, փախչենք, քանի դեռ նրանք չեն հասել մեզ, թե չէ քո վերջն էլ կըտան»: Շնագայլը ծիծաղեց և ասաց. «Հիմարացրել է նա քեզ, քեռի՛: Արի՛ ինձ հետ, և կտեսնես, որ նա ոչ թե վհուկ է, այլ՝ սովորական խաբեբա: Արի պայմանավորվենք, առաջ ես նրա վրա հարձակվեմ, հետո դու բոլորին կուտես, իսկ մնացորդները ինձ կտաս»:

Վագրը զգուշությամբ առարկեց. «Դու մեծ-մեծ խոսում ես, բայց վհուկին տեսնես թե չէ, լեղապատառ կփախչես»: «Դե, եթե դու կարծում ես, որ ես կըփախչեմ,— ասաց շնագայլը,— եկ պարանով կապվենք իրար»: Վագրը մտածեց և համաձայնեց:

Եվ ահա, պարանով ամուր իրար կապված, վագրն ու շնագայլը արահետով բարձրացան ու ճանապարհորդների դեմ ելան: Կինը հեռվից նրանց նկատելուն պես սկսեց բարկանալ. «Հե՜յ, շնագա՛յլ, դու լրիվ ծուլացել ես: Առաջ միանգամից երկու վագր էիր բերում ինձ, հիմա միայն մեկին ես քարշ տալիս»: Այս խոսքերը լսելով, վագրի լեղին ջուր դառավ և նա ճողոպրեց, որքան որ ուժ կար ոտքերում, իր հետ քարշ տալով պարանից կախված շնագայլին:

Նա մրրիկի պես սուրում էր առանց ճանապարհը տեսնելու և շնագայլին այնքան խփեց ծառերի բներին, չորացած կոճղերին, փշերին, որ նրա մարմինը կապույտներով ծածկվեց, իսկ մորթին ամբողջովին բզկտվեց ու քրքրվեց: Շնագայլին հաջողվեց մի կերպ ազատվել պարանից և շնչակտուր, հևասպառ հեռացավ: Իսկ խիզախ կինը անվտանգ անցավ անտառը և հասավ հայրական տուն:

*Ռուս. թարգմ. Վ. ՄԵԽԱԿՅԱՆԻ*

# ՎԵՐՋԻՆ ԺԱՄԸ

*ՆՈՒՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Ծովինարը նստել էր չորրորդ հարկի աստիճաններին: Արդեն վերջին դասն էր: Իրենց դասարանը միջանցքի մյուս ծայրին էր: Այնպես որ այս կողմով դժվար թե մարդ անցներ:

Դասարանով որոշեցին վերջին ժամին փախչել: Գրականության դասն էր: Իսկ Ծովինարը գրականության ժամերը շատ էր սիրում: Դա երևի նրանից էր, որ ինքը շատ էր սիրում ընկեր Սահակյանին: Չէր ուզում նրա դասից փախչել: Բայց քանի որ որոշել և բոլորը գնացել էին, իրեն ի՞նչ էր մնում անել:

— Ծո՛վ, կինո ենք գնալու, թե ուզենաս, արի՛ այնտեղ,— դասից փախչողներին հետևելով ասաց Շուշանիկը:

Ծովինարը իր անունը սիրում էր և դուրը չէր գալիս, երբ կրճատ էին ասում:

Նա չպատասխանեց Շուշանիկին և այսպես մենակ, լքվածի պես, նստել էր աստիճաններին:

Զանգը հնչել էր և մի քանի րոպե էլ արդեն անցել էր, բայց ընկեր Սահակյանը դեռ չկար:

Ծովինարը վեր կացավ, դանդաղ գնաց դասարան, դուռը բացեց, բայց դասարանի դատարկությունը վանեց նրան: Նա նորից ծածկեց դուռը և կանգնեց միջանցքի պատուհանի մոտ:

Չէր ուզում դասից փախչել, բայց եթե մնար, գիտեր, դասարանցիները իրեն անվանելու էին «դավաճան» և այդ պիտակը գուցե մինչև տարվա վերջը մնար իր վրա:

Նա մտածում էր տուն գնալ, երբ երևաց ընկեր Սահակյանը:

— Դասարա՛ն անցիր, ինչո՞ւ ես այստեղ կանգնել,— ասաց նա:

Ծովինարը մտավ դասարան, բայց առաջ չգնաց, կանգնեց դռան մոտ:

— Ո՞ւր են մյուսները:

Ծովինարը գլուխը կախեց և հազիվ լսելի ձայնով ասաց.

— Չգիտեմ:

— Գնացե՞լ են,— ընկեր Սահակյանի աչքերում հիասթափություն ու շփոթվածություն կար:

Մի քանի վայրկյան նրանք լուռ էին:

— Դե լավ, նստի՛ր,— մեկ էլ առույգ ձայնով ասաց ուսուցչուհին,— նստիր, սկսե՛նք դասը:

— Ինչպե՞ս... ես մենակ...

— Դե, եթե մենակ դու ես մնացել, միայն քեզ հետ էլ կպարապեմ,— ժպտալով ասաց ընկեր Սահակյանը:— Ես այսօր ձեզ պատմելու էի Մարտիրոս Սարյանի մասին: Ահա բերել եմ նրա նկարների վերատպությունները:

Եվ ընկեր Սահակյանը Ծովինարին պատմեց մեծ նկարչի կյանքի ու գործունեության մասին, ցույց տըվեց նրա աշխատանքները։

Ծովինարը չզգաց, թե դասն ինչպես անցավ: Կլանված լսում էր: Նրա այտերը հուզմունքից շիկնած էին, աչքերը փայլում էին սարյանական գույների արտացոլքով:

Երբ կանչը հնչեց, նա սթափվեց, չորս կողմը նայեց: Շուրջը մխուր, թափուր նստարաններն էին:

— Վաղը, գրականության ժամին, դասը դու կվարես, և բոլորին կպատմես այն, ինչ իմացար այսօր,— ասաց ուսուցչուհին ու հավաքելով նկարները, դուրս ելավ դասարանից:

Ծովինարը մի քանի րոպե անշարժ մնաց տեղում նստած, հետո դանդաղ ելավ ու գնաց: Նա գնում էր այնպես, ասես ձեռքին կար մի մեծ թաս անմահական ջուր, որը մի անզգույշ շարժումից կարող էր թափվել:

Երեկոյան զանգահարեց Շուշանիկին, իմանալու թե նրանք ի՞նչ էին արել, ո՞ւր էին գնացել:

— Ծո՛վ, դո՞ւ ես,— կայտառ ձայնեց Շուշանիկը,— դու ուր գնացի՞ր: Ոչ մի տե՞ղ: Իսկ մենք այնքան լավ ժամանակ անցկացրինք, մի կես ժամ թափառեցինք, պաղպաղակ կերանք, հետո գնացինք մի հիմար հնդկական կինոֆիլմ տեսանք: Իսկ հետո՞: Հետո էլ ցրվեցինք տները:

Ծովինարը ժպտաց ու մինչև վերջ իր մասին ոչինչ չասելով՝ դրեց լսափողը:

*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



## ՄԱՍԻՍ-ՆՈՒՌՆՈՒՍ ԵՐԿԱԹԳԻԾԸ,

Մասիս—Նուռնուս երկաթգիծը Հայաստանի տասներորդ հնգամյակի կարևորագույն կառույցներից է: Այն անցնելու է Երևանի ճարտարապետական մասով և կապելու է Մասիսի, Աշտարակի և Նաիրիի գյուղատընտեսական շրջանները, հանրապետության մի շարք քաղաքների հետ:

Այդ երկաթգիծը կապվելու է Երևան — Հրազդան — Մեղրաձոր — Համզաչիման — Ֆիոլետովո — Դիլիջան — Իջևան — Աղստաֆա երկաթուղային մայրուղու հետ և անցնելով Հայաստանի կենտրոնական մասով,



## ԲՈԼՈՐԻ ՄԻԱԿ ԱՐԵՎԸ

*ԺՈՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ*

Մեղուն առավ իր արևին,
Տերևն առավ իր արևին,
Առուն առավ իր արևին,
Միտիկն առավ իր արևին,
Բոլորն իրենց արևն առան,
Եկա՜ն, եկա՜ն ու մի դաշտում
Անհագին մեծ բանակ դառան:
Ինչքան անուն՝
Այնքան արև:
Ինչքան արև՝
Այնքան էլ շոգ:
Ո՜չ լինում էր մի գործ անել,
Ո՜չ լինում էր խաղալ անհոգ:
Այնժամ նրանք որոշեցին.
Արևները խառնել իրար.
Խառնել իրար,
Կախել վերից,
Որ շողշողա դաշտի վրա:
Որոշեցին, կատարեցին
Եվ ունեցան արև մի մեծ.
Այն արևը, որ ամեն օր
Ծնվում է մեր աչքերի մեջ,
Այն արևը, որ ամեն օր
Տալիս է մեզ իր լույս բարին,
Արևը իմ,
Արևը քո
Եվ արևը ողջ աշխարհի...




դուրս է գալու Բաքու, այնտեղից էլ Հյուսիսային Կովկաս:

Գնալով ավելանում է Հայաստանի երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը: Մասիս—Նուռնուս երկաթգիծը, հանդիսանալով օժանդակ գիծ դեպի հյուսիս գնացող բեռների համար, կթեթևացնի Երևանի կայարանի ծանրաբեռնվածությունը: Ապրանքատար գնացքների մի մասը կտեսակավորվի Մասիս կայարանում և, առանց Երևան մտնելու, Մասիս—Նուռնուս գծով կուղարկվի Չարենցավան — Հրազդան — Սևան— Ծովժա — Ջող և մյուս շրջանները:

Այս երկաթգծի կառուցման աշխատանքներում կան բազմաթիվ դժվարություններ: Օրինակ, Հրազդան գետի վրա, Նուռնուս բնակավայրի մոտ, կառուցվելու է երկհարկանի 600 մետր երկարությամբ հսկա կամուրջ՝ գնացքների և ավտոմեքենաների համար: Աբովյան կայարանից մինչև Հրազդան գետը անցկացվել է 3 կմ երկարությամբ օժանդակ երկաթգիծ՝ կամուրջի կառուցման անհրաժեշտ շինանյութերը երկաթուղով բերելու համար: Բացի այս կամուրջից, կկառուցվեն տասնյակ ուրիշ մեծ ու փոքր կամուրջներ, հենապատեր և բազմաթիվ այլ հարմարություններ: Սպանդարյանում, Աշտարակում, Արզնիում կառուցվելու են կայարաններ, իսկ ամենախոշորը կլինի Եղվարդի կայարանը, որը կունենա բազմաթիվ հարմարություններ երթևեկողների համար:

Տասներորդ հնգամյա պլանի նախագծում ասված է, որ 50 կմ երկարությամբ Մասիս—Նուռնուս երկաթգիծը շահագործման կհանձնվի 1980 թվականին:

*Ա. ՍԱՀՐԱԴՅԱՆ*
*Գվարդիայի ինժեներ-գնդապետ, ՀՍՍՀ վաստակավոր ինժեներ*




# ԱՐԾԻՎՆԵՐՆ ԻՐԵՆՑ ՁՎԵՐԸ ՉԵՆ ՀԱՇՎՈՒՄ

Գետափի մանրախճային ավազներին պառկած, Արտակը նայում էր կապույտ երկնքին: Գյուղում երկինքը գյուղի մանուշակների նման կապույտ-կապույտ է: Արտակի օդաչու քեռին ասում է, որ երկինքն ամեն տեղ էլ կապույտ է: Ամպերը երկնքի և երկրի մեջտեղում են գտնվում, ամպերից վերև կապույտ երկինքն է: Արտակը հայացքով չափեց երկինքը, երկինքը մեծ է, երկրից էլ մեծ:

Դիմացի սարը համբուրում է երկնքի փեշերը, իսկ սարագագաթին գտնվող հաստաբուն ընկուզենու բարձրադիր ճյուղերը գրկախառնվել են երկնքի հետ: Արտակը հագնվեց և նեղ արահետով բարձրացավ գագաթը: Մագլցեց ընկուզենու ծառը: Ինքնաթիռի ձայն լսեց. ծղոտե գլխարկը հանեց և որպես ողջույնի նշան թափահարեց օդաչուին: Օդանավը մի պտույտ կատարեց նրա գլխավերևն ու թռավ հեռու-հեռու: Արտակը տխուր-տխուր երկնքին էր նայում ու հանկարծ ընկուզենու գագաթին բույն նկատեց: Իսկույն իմացավ, որ արծվի բույն է, գիտեր, որ արծիվն իր բույնը շինում է կոպիտ ճյուղերից, արծվավարի, առանց հատուկ խնամքով ճյուղերը հյուսելու: Բնում երկու ձու կար: Հավի ձվից մի քիչ մեծ, սպիտակ ու կլորավուն ձվեր էին: Տանը պատմի, չեն հավատա: Տանեցիներն արծվի ձվեր տեսած չեն էլ լինի: Արտակը մտածեց ձվերից մեկը վերցնել, տանել տուն, ցույց տալ պապին ու ետ բերել, մայր արծիվը չի էլ իմանա ու չի տխրի:

— Դու ինչպե՞ս ես մագլցել ծառի գագաթը: Լավ է՝ արծիվը տանը չի եղել, թե չէ քեզ կքրքրեր: Էլ ետ չտանես, վտանգավոր է,— արգելեց պապը:

Արծվի ձուն դրեցին թուխս նստած հավի տակ: Փոխարենը Արտակը մառանից մի հավի ձու վերցրեց և տարավ դրեց արծվի բնում:

2

Հայր արծիվը մայր արծվին հավասար թուխս է նստում: 21-րդ օրը ձվերի վրա նստած հայր արծիվը բնից ծվծվոց լսեց: Շրջվեց և բնում հավի ճուտ տեսավ: Խիստ բարկացավ մայր արծվի վրա, որ իրենից թաքուն հավի ձու է ածել: Արծվի ձվին ու հավի ճտին անտեր թողնելով, հայր արծիվը խռովեց մայր արծվից, թռավ հեռու-հեռու:

Մայր արծիվը եկավ հերթափոխին ընդունելու, աղվամազ ճուտիկին բնում մենակ տեսավ: Թևերով ծածկեց և իր մարմնով տաքացրեց անօգնական ճուտիկին: Տխրեց ու լաց եղավ հայր արծվի համար.



բայց նաետ չվերադարձավ: Շատ դժվարություններ կրեց մայր արծիվը, օրական մեկ անգամ էր վեր կենում ձվի վրայից, այն էլ փոքրիկի համար կեր հայթայթելու: Նիհար ու հյուծված արծիվը մայրական հոգատարությամբ խնամում էր հավի ձտին և մայրական համբերությամբ սպասում իր մյուս բալիկի ծնվելուն:

3

Հավի ձուտիկներն իրենց սուր կտուցներով ծակեցին ձվի կճեպները և դուրս եկան: Քիչ անց նրանք հրաժարվեցին բնից, և սկսեցին ականջալով քայլել մայր հավի շուրջը: Հավը թողեց արծվի ձուն, ձտերին ետևը գցած կրթկրթալով քայլեց բակում: Արտակն ու պապիկը կերակրեցին, ջուր տվեցին ձուտիկներին և հավաքեցին նրանց քթոցի տակ, իսկ հավին թողեցին քթոցից դուրս: Մայր հավը մի քանի պտույտ կատարեց քթոցի շուրջը, ապա նստեց արծվի ձվի վրա, կարոտով նայելով իր ձուտիկներին:

45-րդ օրը ծնվեց ոտքերը մինչև կրկնաթաթերը փետրավորված, ուժեղ ճիրաններով ու կեռ կտուցով արծվի ձուտը:

4

Արտակը դժվարությամբ իջավ ընկուզենուց: Ձեռքին բռնել էր հավի ձուտը, նրա փոխարեն բնում թողնելով արծվի ձագին: Սարի գագաթից Արտակը վերջին անգամ նայեց արծվաբնին: Հսկա թևերը շարժելով, բնին էր մոտենում հայր արծիվը:

ՌՈՒԲԵՆ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ




# ԱՌԱՋԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԻՑ ՍԿՍԱԾ

Սեպտեմբերյան պայծառ առավոտ էր: Իջևանի № 1 դպրոցի դիրեկտոր ընկեր Սարգսյանի առանձնասենյակը մտավ կրակոտ աչքերով, վառվռուն մի աղջիկ: Դիրեկտորը լավ էր ճանաչում իր նախկին շրջանավարտ Սիրուշ Ուդումյանին: Զրույցը եղավ կարճ ու գործնական: Հաջորդ օրը Սիրուշը 7-րդ Բ դասարանը մտավ որպես արտադրության ջոկատավար: Երեխաները սիրեցին իրենց ջոկատավարին, արագ մտերմացան: Հենց այդ առաջին օրն էլ նրանք այցելեցին գորգագործական կոմբինատ: Այդտեղ մանածային արտադրամասում, լիցքավորող բանվորուհի է Սիրուշը: Ծանոթացան նրա աշխատանքին, շրջեցին մյուս արտադրամասերում: Էքսկուրսիայից հետո կրուցեցին «Ի՞նչ եմ ուզում դառնալ» թեմայով:

Համադասարանցիներ Վրեժը և Մուշեղը հաճախ էին «երկուսներ» ստանում աշխարհագրությունից ու քիմիայից, ֆիզիկայից ու հանրահաշվից: Շտապ օգնության պոստի անդամները արտադրության ջոկատավարի հետ այցելեցին Վրեժենց տուն, ցանկություն հայտնեցին օգնել նրան:

— Չեմ ուզում ձեր օգնությունը,— ձեռքը թափ տալով հրաժարվեց Վրեժը:

Երեխաները նրբանկատ չէին գտնվել Վրեժի նկատմամբ: Հայկը և Սուրիկը միշտ ծիծաղում էին նրա վրա, երբ նա «երկուս» էր ստանում: Ընկերները փոխեցին իրենց վերաբերմունքը, սկսեցին սիրալիր վարվել հետը:

«Գուցե ես եմ մեղավոր»,— արդեն ինքն իր մեջ միտք էր անում Վրեժը: Ի վերջո ընդունեց ընկերների օգնությունը: Նրա օրագրից հետզհետե վերացան «2»-ները: Վրեժին սկսեց հետաքրքրել ամեն ինչ, նույնիսկ հասարակական հանձնարարություններ ստացավ: Նա լավ է նկարում և պատի թերթի ձևավորման աշխատանքները նրան հանձնարարվեց: Երբ Վրեժը ավարտեց «Բողբոջ» պատի թերթի ձևավորումը, ջոկատի պիոներների լավագույն հոդվածներն ու շարադրությունները



պետեղվեցին այնտեղ: Սուսաննա Առուստամյանը իր հոդվածում ջոկատավարի մասին գրել էր. «Դուք ինձ հանդիպած ամենալավ մարդկանցից եք: Ես Ձեր նկատմամբ սեր ու հարգանք տածեցի հենց առաջին հանդիպումից՝ սեպտեմբերի մեկից, երբ դուք դասարան մտաք և հայտնեցիք, որ մեր ջոկատավարն եք: Առաջին հանդիպումին հաջորդեց երկրորդը, երրորդը, չորրորդը... և դուք բազմաթիվ լավ նախաձեռնությունների հեղինակ դարձաք: Իսկ ինչքա՜ն ուրախացանք, երբ բոլորիս ներկայությամբ դպրոցի ավագ ջոկատավարը ձեր կրծքին ամրացրեց «Գերազանցիկ կոմերիտական» կրծքանշանը: Ձեզ չհաջողվեց ուսանողուհի դառնալ, չիրականացավ ձեր բաղձանքը, փոխարենը դարձաք բոլորիս հպարտությունն ու սիրելին»:

Իսկ Մետաքսյա Խեչյանն իր շարադրությունն ավարտում է այսպես. «Մենք Ձեզ շատ սիրեցինք, ընկեր Սիրուշ... Շատ բան ստացանք Ձեզանից, Ձեր կազմակերպած հաճելի ու բովանդակալից պարապմունքներից, հանդիպումներից, դեպի բնության գիրկը կատարած էքսկուրսիաներից, թանգարանները կատարած այցելություններից:

Դուք ունեք բնավորության այնպիսի գծեր, որոնք փնտրել եմ մարդկանց մեջ: Դուք ազնիվ եք, բարի, խելացի, կրակոտ, նախաձեռնող... Լավ մարդու լավ օրինակ եք դուք»:

Գարուն է: Ջոկատի երեխաները մասնակցում են գարնանային աշխատանքներին: Դպրոցից կոմբինատ տանող ճանապարհի եզրերին նոր տնկիներ են շարում, որ կանաչ լինի բարեկամների ճանապարհը:

Իսկ գրասեղանին բուրում են ծաղիկներ: Դրանք պիոներներն են նվիրել իրենց սիրելի ավագ ընկերոջը՝ Սիրուշ Ուդումյանին:

*ԼԱՎՐԵՆՏԻ ՄԻՐՋՈՅԱՆ*





# ԻՄ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԸ



*Նատալյա Թեումյանի դիմանկարը*

# ՀԱԿՈԲ ՀՈՎՆԱԹԱՆՅԱՆ

(1806—1881)

*Հովնաթանյանի կյանքից քիչ բան է մեզ հայտնի: Սովորաբար նկարչի ստեղծագործական ճանապարհը բնութագրող ամենածանրակշիռ փաստերը համարվում են նրա երկերը: Ցավոք, այս իմաստով ևս մեզ շատ քիչ բան է հասել նրանից: Ամենահամեստ հաշիվներով Հովնաթանյանը*

պետք է որ ստեղծած լինի 400—500 դիմանկար, մինչդեռ մեզ հասել է ընդամենը դրա տասներորդ մասը:

Հովնաթանյանը բացառապես դիմանկարներ է ստեղծել: Նա իր դիմանկարների վրա աշխատել է երկար, չի շտապել, հապճեպ էֆեկտների ետևից չի ընկել: Կարծես կանխագուշակում էր, որ նկարածը ոչ թե լոկ պատվիրատուներին գոհացնելու համար է, այլ նաև սերունդների, որոնք իր ստեղծած մնայուն արժեքներին պատվավոր տեղ պիտի հատկացնեն ազգային արվեստի գանձարանում:

Բացառիկ ընտիր ճաշակը, անթերի կատարումը, ձևերի ավնվությունը, որ այնքան բնորոշ են հայ ուկերիչներին, խեցեգործներին, գորգագործների արվեստին, հատուկ են նաև Հովնաթանյանի ստեղծագործությանը:

Հովնաթանյանի դիմանկարների հերոսները պատկերված են այնքան խորն ու բազմակողմանի, որ դիտողը նրանց պատկերացնում է նաև գործողության մեջ, տեսնում է նրանց ապրելակերպը, շրջապատը:

Այս նկարչի գլուխ-գործոցներից մեկը՝ Շուշանիկ Նաղիրյանի դիմանկարը: Այս աշխատանքը բոլոր կանացի դիմանկարներից առանձնանում է ինչ-որ հատուկ ներքին լույսով:

Չափազանց գեղեցիկ է հագուստի ավնիվ մոխրագույնի ու կարմիրի հարաբերությունը:

Նաղիրյանի պատկերում ապշեցնում են արտակարգ վճիտ, ինչեղ հարաբերումների փայլն ու բյուրեղյա ներդաշնակությունը: Նկարիչը կոմպոզիցիայի մեջ է մտցրել սենյակի պատուհանը: Երևում է պարզ, կապույտ երկինքը, իսկ պատուհանի գոգին դրված է ծաղկաման, մեջը՝ ծաղիկներ:

Նկարչի լավագույն գործերից են Ներսես Աշտարակեցու, Նպատալյա Թեումյանի, Նայելի և Մարտիրոս Օրբելյանների դիմանկարները:

Հովնաթանյանի դիմանկարների կոմպոզիցիոն լուծումները կարող են միօրինակ թվալ, որովհետև իրենց հիմքում ունեն մեկ սկզբունք՝ պատկերել մարդուն անշարժ վիճակում, գոտկատեղից վեր, և գրեթե բոլոր դեպքերում հարթ մոխրագույն ֆոնի վրա: Այս միօրինակ բազմապանությամբ նկարիչը նման է իր բանաստեղծ նախնիներին՝ Հարություն և Նաղաշ Հովնաթանյաններին, կարծես երգում է միևնույն երգը՝ մարդու և աշխարհի մասին, բայց երգն ամեն անգամ ուրիշ է:

Մեծ նկարչի ստեղծագործության բուն արժեքը նրա գեղանկարչական մտածողության, բանաստեղծական հմայքի մեջ է. հատկանիշներ, որ սահման ու ժամանակ չեն ճանաչում, որ, դարից դար անցնելով, ստեղծագործությունը մոտ ու հասկանալի են դարձնում ամեն եկող ու գնացող սերնդի:

ՀԵՆՐԻԿ ԻԳԻԹՅԱՆ

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԻՆՉՈ՞Ւ ՉԵՆ ԱՂՄԿՈՒՄ ԱՆԻՎՆԵՐԸ

(պատասխանում է ՅՈՒ. Ա. ԼԻՄԱՆՈՎԸ, Լենինգրադի երկաթուղային ինժեներների ինստիտուտի պրոֆեսոր):

— Որովհետև Բայկալ-Ամուրյան մայրուղու ռելսերը չեն կցվում իրար և ձուլված են յուրահատուկ մետաղից: Յուրաքանչյուր ռելսի երկարությունը հասնում է մեկ կիլոմետրի, իսկ դրանց տակի կոճերը ոչ թե փայտից են, այլ՝ երկաթից: Խճաքարերի լցոնը նույնպես անսովոր է: Դրանք հատուկ սոսնձով սոսնձված են իրար: Ավելին, Բամյան գնացքը ո՛չ գծերի հատման կետում, ո՛չ կամուրջների վրա, ո՛չ էլ թունելներում չի թխկթխկացնելու, որովհետև ռելսերը ռետինե միջադիրների վրա են դրված:



Այդպիսի անաղմուկ գնացքով ճամփորդելը հրաշալի է, չէ՞: Իսկ գնացքը ավելի ու ավելի արագ է թռչում և ճանապարհի եզրերին ավելի ու ավելի արագ են փայլատակում սյունիկները: Ի դեպ, այդ ի՞նչ սյունիկներ են: Չէ՞ որ մենք խճուղով չենք ընթանում: Ուրեմըն եկեք կանգնենք և իմանանք:

### ԴՐԱՆՔ ՍՅՈՒՆԻԿՆԵՐ ՉԵՆ, ԱՅԼ՝ ՍԱՌՆԱՐԱՆՆԵՐ

(ճշտում է Ս. Ի. ԳԱԳԵՎԸ «Լենգիպպրոմտրանս» ինստիտուտի գլխավոր մասնագետ):

— Շատ տեղերում մայրուղին անցնում է ուղիղ, չչորացված փոքրիկ ճահճուտների միջով: Դրանք չորացնելու համար մելիորատորներից շատ ժամանակ կը-

**Ուսո՞ւմ ես շրջագայել ԲԱՄ-ում: Այդ մասին, երևի, հարցնել պետք չէ: Միլիոնավոր երեխաներ ոչ միայն երազում են, այլև հազարավոր տոննա մետաղի ջարդոն են հանձնել «ԲԱՄ-ին՝ պիոներական գնացքներ» օպերացիայի հաշվին: Հետևաբար, այսօր նման հարցը տալը ավելորդ է: Դարի կառույցը մեկից ավելի հնգամյակի համար է նախատեսված: Ուրեմն էլ ինչպե՞ս կարելի է շրջագայել մայրուղով, երբ այն պատրաստ չէ:**

**Իսկ եթե մենք հեռակա կամ երևակայական ճամփորդություն կատարե՞նք: Կարծում եք անհետաքրքի՞ր կլինի: Իզուր: Դուք չնկատեցիք էլ, որ մեր ճամփորդությունն արդեն սկսված է: Այո, այո՛, արդեն սկսված է, թեև դուք ո՛չ անիվների, ո՛չ էլ երկաթգծերի աղմուկ եք լսում:**

*պահանջվեր: Դրա համար էլ որոշվեց ոչ թե չորացնել, այլ սառեցնել դրանք: Հզոր սառնարանները կարող են հուսալիորեն ապահովել մայրուղու կայունությունը:*

*Այդ ճահճուտների սառեցման համար ո՛չ էլեկտրաէներգիա է անհրաժեշտ, ո՛չ սովորական կոմպրեսոր և ո՛չ էլ որևէ այլ սարքավորում: Այդ սյունիկ-սառնարանները կարող են հարյուր տարի ծառայել և ոչ մի խնամք կամ վերանորոգում չպահանջել: Իր կառուցվածքով նոր սառնարանը մետաղե խողովակ է, որը լցնում են նավթով և հերմետիկորեն փակում: Հետո խողովակը կիսով չափ թաղում են հողի մեջ: Ցրտերին ընկնելուն պես այն սկսում է աշխատել: Խողովակի վերնամասը դրսում է, դրա համար էլ շուտ է սառչում: Սառը նավթն իջնում է ցած, վեր հանում ավելի տաք հեղուկը: Սակայն շուտով դա նույնպես ավելի ու ավելի ուժեղ սառելով, իջնում է ցած: Նավթի այդ շրջապտույտը շարունակվում է այնքան ժամանակ, մինչև ձմռան սառնամանիքը ամբողջովին վերաբնակվում է հողի տակ և հավիտյան մնում այնտեղ:*



*Մեր ճանապարհը շարունակվում է, և կրկին անսովոր ու վարմանահրաշ տեսարաններ են հաջորդում իրար: Երկաթգծի երկայնքով փռված խուլ տայգան հանկարծ նահանջում է, և մենք տեսնում ենք այգիներ, պարտեզներ, մինչև հորիզոնը ձգվող ցորենի ալիքվող արտեր: Բայց այդ վայրերում, ուր ձմռանը սիբիրյան հանրահայտ սառնամանիքներն են թափառում, կարո՞ղ է հաց, բանջարեղեն կամ միրգ աճել:*

## ԿԱՐՈՂ ԵՆ ԵՎ ՊԱՐՏԱՎՈՐ ԵՆ

**(ասում է բուսաբուծության ինստիտուտի սելեկցիոներ Մ. Ա. ՎԱՎԻԼՈՎԱՆ):**

*— Այստեղ յուրաքանչյուր բույս ականական գանձ է: Վերցնենք թեկուզ սև հաղարջը: Երկրագնդի ցանկացած վայրում նրա հասունանալու համար անհրաժեշտ է ոչ պակաս հարյուր օր: Իսկ ԲԱՄ-ում կպահանջվի ութսուն օր, վարսակին՝ մեկ շաբաթ շուտ: Նույնը կարելի է ասել կաղամբի, շաղգամի, բազուկի, սամիթի մասին: Իսկ կարտոֆի՞լը: Դրան նույնպես վարժեցրել են հյուսիսի պայմաններին և այժմ ամենադիմացկուն ու ամենավաղահաս տեսակները բնակություն են հաստատել ԲԱՄ-ում: Մայրուղու նորաբնակների թվում դուք կարող եք տեսնել նաև խնձորենիներ: Հետաքրքիրն այն է, որ դրանց ամենադիմացկուն տեսակները վախենում են*



*խստաշունչ սառնամանիքից: Այդ դեպքում դրանք ինչպե՞ս են ձըմեռելու այստեղ: Ձմռան նախօրեին խնձորենիները փաթաթում են հատուկ պատրաստված փըրփուրով: Ամբողջ ձմեռ ծառերը նիրհելու են տաք ծածկոցի տակ, իսկ գարնանը փրփուրը լվանում են անձրևաջրերը և այն վերափոխվում է արժեքավոր պարարտանյութի:*

*Մեր ճանապարհորդության մասնակիցները, հատկապես աղջիկները, պարտավոր են ուշադրություն դարձնել բամբակյանների հագուստին: Նրանք իրոք որ անսովոր են հագնվում:*

## ԱՄԵՆԱԳԻՏԱԿԱՆ ՆՈՐԱՁԵՎՈՒԹՅՈՒՆԸ

**(պատմում է Գլխավոր գեոֆիզիկական դիտարանի աշխատակից, աշխարհագրական գիտությունների թեկնածու Ն. Ա. ԵՖԻՄՈՎԱՆ):**

*— Մայրուղու շինարարների համար արտահագուստ ընտրելն այնքան էլ հեշտ գործ չէր: ԲԱՄ-ը իրենից ներկայացնում է երեք հազար երկու հարյուր կիլոմետր տարածություն՝ ամենատարբեր եղանակներով ու աշխարհագրական գոտիներով: Այդ ամենը պետք է անպայման նկատի առնվեր նույնիսկ մարդու մարմնի արտաքին մակերևույթի միջին ջերմությունը՝ աշխատանքի և հանգստի ժամերին: Պետք է ճշտվեր, թե մարդն ինչ հագուստով ավելի տաք կլինի. բրդյա բաճկոնո՞վ, սվիտերո՞վ, թե՞ անջրանցիկ վերարկուով:*

*Եթե դրսում տաք արև է, ապա հարմար կլինի հագնել առաձգա-*







# ԵՓՐԱՏՅԱՆ ԲԱՐԴԻ

Արտաքինից այս բուսատեսակը նման չէ մնացած բոլոր, ձեզ քաջ հայտնի բարդիներին: Առաջին հայացքից թվում է, թե սա մի սովորական ուռենի է: Բարձրությունը հազիվ է հասնում 10—12 մետրի, սաղարթը ցրված է, անկանոն: Բայց ամենից զարմանալին այն է, որ նույն ծառի սաղարթի տարբեր մասերում խիստ բազմազան ու տարաձև տերևներ են աճում: Եթե երիտասարդ ճյուղերի վրա հանդիպում են ուռենուն բնորոշ երկարավուն-նշտաձև տերևներ, ապա ավելի հասակավոր ճյուղերի վրա տերևները ձվաձև-ռոմբաձև, լայն-դելտաձև, դեպի կողմերը լայնացած, վերևի մասում ատամնաեզր, եռանկյունաձև և այլ բազմաթիվ ձևերի են: Այս երևույթը, որը բուսաբանները անվանում են «տարատերևություն», հատուկ է միայն որոշ, խիստ սահմանափակ քանակությամբ բույսերի:

Ի տարբերություն սովորական բարդիների, այս բուսատեսակը աչքի է ընկնում բավականին ջերմասիրությամբ: Ցրտահարվում և ոչնչանում է —20 աստիճանից ցածր սառնամանիքների դեպքում: Լավ է դիմանում շոգին, խոնավասեր է, սիրում է թեթև, ավազով հարուստ հողեր:

Եթե սովորական բարդիները հեշտությամբ են բազմանում կտրոններով, ապա եփրատյան բարդին այդ տեսակետից բացառություն է կազմում: Այս ծառատեսակը կտրոններով բազմացնելու բոլոր փորձերը ապարդյուն են անցել: Եփրատյան բարդին բազմանում է միայն սերմերով կամ արմատային մացառներով:

Բարդու այս տեսակը հնուց ի վեր լայնորեն օգտագործվել է ժողովրդական բժշկության մեջ: Կեղևը մեծ քանակությամբ խեժ է պարունակում («բուրի-արմենի»), որը օգտագործում են զանազան հիվանդություններ բուժելու համար:

Այս զարմանալի ու տարօրինակ բույսը խիստ հազվադեպ է հանդիպում: Մեր հանրապետությունում աճում է միայն Մեղրու ձորում՝ Արաքսի ափին, խիստ սահմանափակ տարածության վրա: Հանրապետությունից դուրս հայտնի է Դաղստանում, Ղարաբաղում և Հյուսիսային Իրանում:

Եփրատյան կամ տարատերև բարդին ներկայումս անհետացման եզրին է գտնվում և շուտափույթ պահպանության խիստ կարիք է զգում: Մեղրու շրջանի դպրոցականները հեշտությամբ կարող են ճանաչել այս տարօրինակ ու բավականին գեղեցիկ բույսը և զբաղվել դրա պահպանության հարցերով: Միայն թե, շատ չպետք է հրապուրվել դպրոցամերձ հողամասերում եփրատյան բարդի աճեցնելու հեռանկարով, քանի որ աշակերտները ստիպված կլինեն ոչնչացնելու այս թանկարժեք բույսի բազմաթիվ մացառներ, դրանցից մի քանիսը արմատակալեցնելու համար: Ուրիշ բան է, եթե դպրոցականները կարողանային եփրատյան բարդու բույսեր աճեցնել ուղղակի սերմերից: Սակայն դա բավականին դժվար խնդիր է և հնարավոր չէ իրականացնել առանց մասնագետի օգնության:

Ամեն կերպ պետք է պահպանել Հայաստանի բնության այս հազվագյուտ ու անհետացման եզրին գտնվող բուսատեսակը:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

---

*կան պարանիկներից հյուսված ցանց-մայկա, իսկ դրա վրայից*

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*




*վերնաշապիկ կամ շրջազգեստ... Մասկովյան ճնարարները ասում են, որ նման հագուստների մեջ ամենակատաղի մռնակն անգամ չի կարող խայթել ձեզ: Իսկ եթե դրսում քառասուն աստիճան սառնամանի՞ք է: Այդ դեպքում պետք է հագնել էլեկտրականությամբ տաքացվող մուշտակ: Բամբակի և մորթու փոխարեն այդ մուշտակի մեջ ներքևից էլեկտրական հոսանք հաղորդող ճկուն նյութ է կարված: Տաքացնող մարտկոցների հետ միասին դրանք կշռում են մոտ երկու կիլոգրամ: Այդ նույն գործվածքներից կարում են նաև աշխատանքային կզեստ, անդրավարտիք, կոշիկների միջատակեր, ձեռնոցներ, որոնք տաքացվում են էլեկտրականությամբ: Դրանց մասին այսպես էլ ասում են. «Հարյուր վատտ հզորությամբ կոստյում... Հինգական վատտ հզորությամբ ձեռնոցներ»:*

## *Թևավոր խոսքեր*

# ՊՅՈՒՌՈՍՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿ

Հունաստանում կա մի երկրամաս, որ կոչվում է Էպիրոս: Էպիրոսի արքա Պյուռոսը մ. թ. առաջ 280 թվականին երկարատև և դաժան պատերազմ էր մղում Հռոմի դեմ: Երկու անգամ նրան հաջողվում է հաղթել. նրա զորքն ուներ մարտական փղեր, որոնց դեմ հռոմեացիները չէին կարողանում կռվել: Այնուամենայնիվ, Պյուռոսը երկրորդ հաղթանակը տարավ այնպիսի կորուստների գնով, որ, ըստ ավանդության, ճակատամարտից հետո բացականչել է. «Եվս նման մի հաղթանակ և ես կմնամ առանց զորքի»:




Պատերազմն ավարտվեց Պյուռոսի պարտությամբ և նահանջով Իտալիայից: «Պյուռոսյան հաղթանակ» խոսքը շատ վաղուց դարձել է արտահայտությունը մի հաջողության, որ ձեռք է բերվում այնպիսի թանկ գնով, որ, թերևս, պարտությունը պակաս ձեռնտու չլինի: Ֆաշիստական զորքերի հաղթանակը 1941 թվականին Ելնի և Սմոլենսկի մոտ իրականում «Պյուռոսյան հաղթանակ» էր:

# ՎԵՐՋԻՆ ՄՈՀԻԿԱՆԸ

Քիչ կլինեն մարդիկ, որ կարդացած չլինեն Ֆ. Կուպերի «Վերջին մոհիկանը» հետաքրքիր գիրքը: Այնտեղ հեղինակը «ղալկաղեմ» եվրոպացիների ոչնչացրած հյուսիսամերիկյան ավնիվ մի ցեղի և նրա վերջին ներկայացուցչի դառն ճակատագրի մասին է պատմում:

Մոհիկաններն ապրում էին Հուդզոն գետից հարավ և մտնում էին դելավարների ցեղային միության մեջ:

Արդեն հարյուր տարուց ավելի է, ինչ սպիտակամորթները ոչնչացրել են նրանց:

Կուպերի շնորհիվ «Վերջին մոհիկանը» բառակապակցությունը նշանակում է առհասարակ ինչ-որ մի խումբ մարդկանց վերջին ներկայացուցիչ:




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Լույս է տեսնում 1923 թվականից

№ 11 Նոյեմբեր 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04109: Պատվեր 1958: Տպաքանակ՝ 51706: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 18/XI 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:





